

## ԱԶԱՏ ԳՆԴԱՓԱՅՏ

*(Ղազաղ Թոփի)*

**Խաղացողների թիվը**—*4-25*

**Խաղի գործիքները**—*Սովորական վոչ մեծ գնդակ չորից պատրաստած և գնդափայտ։*

**Խաղի պատրաստությունները**—*Խաղատեղի յերկու հակառակ կողմերում, ծայրերից յերեք քայլ հեռու, յերկու գիծ են քաշում, մեկը կոչվում է խաղագիծ, մյուսը՝ տեղագիծ։ Այդ գծերի միջի տարածությունը՝ դաշտ։ Խաղացողներից մեկն ընտրվում է գնդակը հետ տվող, մյուսը գցող։ Յերկուսն էլ կանգնում են խաղագծերի վրա, մյուսները ցրվում են դաշտում։*

**Խաղը**—*Յերբ բոլորը բռնում են իրենց տեղերը, գցողը գնդակը գցում է հետ տվողին, վորը հետ է տալիս գնդափայտով։ Գնդակը հետ տալով, հետ տվողը վազում է դեպի տեղագիծը և կրկին հետ դառնում խաղագիծը։ Այդ միջոցին դաշտում կանգնածները աշխատում են գնդակը վերցնել և նրանով խփել փախչողին։ Յեթե դաշտի խաղացողներից մեկին ու մեկին հաջողվում է խփել, վերջինը դառնում է գցող, իսկ գնդակ գցողը գնդակ հետ տվող։ Իսկ նախկին հետ տվողը կանգնում է դաշտում, վորից հետո խաղը շարունակվում է։*

**Կանոններ**—*1. Յեթե դաշտի խաղացողներից մեկին հաջողվում է հետ տված գնդակը բռնել, նա դառնում է հետ տվող, իսկ նախկին հետ տվողը դառնում է դաշտի խաղացող։*

*2. Դաշտի այն խաղացողը, վորը գնդակը բռնում է գետին ընկնելուց հետո, կարող է նրանով խփել փախչող հետ տվողին։ Յեթե այդ հաջողվում է նրան, ապա նա դառնում է գցող, նախկին գցողը՝ հետ տվող, իսկ խփվածը դաշտի խաղացող։*

*3. Հետ տվողին կարելի չէ խփել միայն դաշտում և այնտեղից, վորտեղից վերցնում են գնդակը։*

*4. Յերեք անգամ գնդակն անկանոն գցողը, դառնում է դաշտի խաղացող և նրա տեղը նշանակվում է նոր գցող։*

—

## ԳԱՅԼՆ ՈՒ ՎՈՉԽԱՐՆԵՐԸ

**Խաղացողների թիվը**—*6-30*

**Խաղը**—*Խաղացողներից մեկին ընտրում են գայլ, մյուսին՝* **հովիվ**, *իսկ մնացածները կոչվում են վոչխարներ։ Խաղատեղի յերկու կողմերում 2-3 քայլ լայնությամբ վորոշ տարածություն են կտրում և անունը դնում փարախ։ Յերկու փարախների մեջ տեղը, վորոշում են գայլի վորջի (բնի) տեղը։ Մնացած ամբողջ տարածությունը կոչվում է դաշտ։*

*Յերբ վոչխարները կանգնում են մի փարախում և հովիվը նրանց մոտ՝ դաշտում, գայլն իր վորջից ասում է հովվին. «Հովիվ, հոտդ դաշտ քշիր» և իսկույն հարձակվում է փարախից դուրս փախչող վոչխարների վրա, վորոնք աշխատում են գայլից ազատվել և փախչել դիմացի ազատ փարախը*

*Գայլն աշխատում է վոչխարներից մեկն ու մեկին բռնել ու տանել իր վորջը, իսկ հովիվը պաշտպանում է իր վոչխարներին։ Յեթե գայլը վոչխարներից մեկին բռնում է, վերջինը դառնում է նրա ոգնականը։*

*Յերբ գայլն իր վորջից նորից ասում է հովվին նույն խոսքերը, ոգնականը գայլի հետ դուրս է գալիս և խանգարում է փախչող վոչխարներին, վորով ոգնում գայլին—վոչխարներից մեկին բռնելու համար։ Յերբ գայլի վորջում մի քանի ոգնականներ են լինում, նրանք բոլորը իրար ձեռքից բռնած՝ շղթա կազմելով, ոգնում են գայլին՝ վոչխար բռնելու։*

*Խաղն այսպես շարունակվում է, մինչև գայլը վորսում է բոլոր վոչխարներին։*

**Կանոններ**—*1. Գայլն իրավունք չունի իր վորջից դուրս գալու մինչև վոչխարները դուրս չգան փարախից։*

*2. Ոգնականներն իրավունք չունեն վոչխարներին ձեռքով բռնելու (ինչպես և հովիվը գայլին)։*

*3. Հովիվն ու վոչխարներն չպետք է մտնեն գայլի վորջը, ինչպես և գայլը իրավունք չունի մտնել փարախը։*

*4. Գայլը կարող է բռնել վոչխարներին միայն դաշտում։*

## ԳԵՐԻՆԵՐ

*Սահմանային գծով, խաղադաշտը բաժանվում է յերկու հավասար մասի։ Ամեն մի մասը պատկանում է խմբերից մեկին։ Սահմանագծից, պայմանավորված հեռավորության վրա, ամեն մի խումբ իր համար բերդ է շինում կամ «գերու տեղ» և վորոշում Բերդը միայն մի մուտք պետք է ունենա։*

**Խաղը**—*Խաղացողները կանգնելով սահմանի մոտ, ձեռքները մեկնում են իրենց հակառակորդներին ու աշխատում սահմանի գծի վրայով քաշել իրենց մասը։ Հենց վոր խաղացողն ընկնում է հակառակորդների դաշտը, վերջինները բռնում են նրան ու տանում բերդը, ուր պետք է մնա նա, մինչև իր խմբի խաղացողները ազատեն։*

**(Շարունակությունը ծածկի 3-րդ յերեսում)**

Չորրորդ տարի

Բանվոր դասակարգի պայքարում-պիոներ՝ պատրաստ։



ՊԱՏԱՆԵԿԱԿԱՆ ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ԱՄՍԱԳԻՐ

ՕՐԳԱՆ ՀԼԿՅԵՄ ԿԵՆՏԿՈՄԻՆ ԿԻՑ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԲՅՈՒՐՈՅԻ

Խմբագրության հասցեն—Յերևան, Աբովյան փ. № 36

№ 5—6 (9—10) ՀՈՒՆԻՍ—ՀՈՒԼԻՍ 1926 թ.

# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ 5-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ԱՌԹԻՎ

## ԿՈՄՅԵՐԻՏԱԿԱՆՆԵՐԻՆ ՅԵՎ ՊԻՈՆԵՐՆԵՐԻՆ

**Սիրելի ընկերներ.**

*Լրանում է 5-րդ տարին, վորի ընթացքում պիոներական կազմակերպությունը կուսակցության յեվ կոմյերիտմիության ղեկավարությամբ, համառ ու յեռանդուն աշխատանքով, հաղթահարելով բոլոր խոչընդոտներն ու դժվարությունները, կարողացել է խորացնել իր աշխատանքները։ Այսօր, պիոներական կազմակերպությունը իր շարքերում համախմբված ունենալով հեղափոխական պատանեկության լավագույն տարրերին, կռում ու կոփում է նրանցից կոմունիստական հասարակության լավագույն կառուցողներ։*

*5-րդ տարեդարձին ամեն մի պիոներ, ամեն մի կոմյերիտական հաշվի պիտի առնի կազմակերպության աշխատանքների փորձը, նրա նվաճումներն ու բացերը, պետք է ավելի յեռանդուն աշխատի պատանեկության դաստիարակության գործը ավելի լավ հիմքերի վրա դնելու համար։*

*Հայաստանի պիոներական կազմակերպությունը կազմում է միջազգային պատանեկական շարժման ջոկատներից մեկը։*

*Նա կրթվում ու դաստիարակվում է միջազգային կոմունիստական դաստիարակության հիմունքներով հենց այդ կոմունիստական միջազգային դաստիարակությունը այն պողպատե օղակներից մեկն է, վորով Հայաստանի պիոներական շարժումը կապվում է ամբողջ աշխարհը մարտնչող պատանիների շարժման հետ։*

*Պիոներները կռում են կոմունիզմի համար մարտնչող մարդկության առաջնորդի՝ Լենինի ուխտով։*

*Այդ անունը թող միշտ հիշեցնի պիոներներին իրենց առաջ կանգնած խնդիրները։ Թող պիոներական կազմակերպության 5-րդ տարեդարձին Հայաստանի պիոներները հաշիվ տան, թե ինչ են արել նրա պատգամներն իրագործելու համար։ Յեվ դեռ ինչ անելիքներ ունեն կատարելու։*

*Պիոներական կազմակերպության 5-րդ տարեդարձին պիոներների առաջ խնդիր է դրվում՝ ավելի թարմացնել, աշխուժացնել ու բովանդակալից դարձնել պիոներական կազմակերպության աշխատանքները։ Այս գործում պիոներների մեծ յեղբայրները՝ կոմյերիտականները օգնության պիտի հասնեն նրանց. ավելի ու ավելի պետք է ուժեղացնեն կոմյերիտական ղեկավարությունը պիոներների վրա։*

*Պիոներական շարժումը պրոլետարական աշխատանքային դպրոցը կառուցող հիմնական ուժերից մեկն է հանդիսանում։ Այս ասպարեզում խոշոր նվաճումների կողքին գոյություն ունեն նույնպես զգալի բացեր։ Ավելի՛ մոտ դպրոցական շինարարությանը։ Ավելի՛ ուժեղ աշխատանք՝ մեր դպրոցից արմատախիլ անելու հին մնացորդները, դպրոցը աշխատավորության հետ կապելու համար։*

*Հայաստանի Լենինյան Կոմյերիտմիության Կենտրոնական յեվ Յերևանի կոմիտեները հաստատ համոզված են, վոր պիոներական կազմակերպությունը կուսակցության յեվ կոմյերիտմիության ղեկավարությամբ կկատարի իր վրա դրված պարտականությունները։*

*Պիոներական կազմակերպությունը իր գոյության 6-րդ տարին մտնելով, թող ավելի յեռանդուն լծվի կոմունիստական հասարակության կառուցման գործին։*

*Կեցցե՛ հեղափոխական բոցերից դուրս յեկած պիոներական մարտնչող բանակը։*

*Կեցցե՛ յերեք սերունդների պողպատյա միանականությունը։*

**ՀԼԿՅԵՄ Կենտրոնական**

**յեվ Յերևանի Կոմիտեներ**




Կրկնապատկված լեռանդով դեպի աշխատանք, գիտություն ու պայքար

Հ. ՄԱՐԱՏ

## ՄԵՐ ՀԻՆԳԵՐՈՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ԱՌԹԻՎ

Մեր կազմակերպության հինգ տարին լրացավ։ Նա մտավ իր 6 րդ տարվա մեջ։

Քիչ չեն մեր հինգ տարվա նվաճումները։ Այսօր մեր շարքերում 30 հազարից ավելի պիոներներ և հոկտեմբերիկներ կոմունիստական կուսակցության և կոմսոմոլի ղեկավարությամբ դաստիարակվում են և պատրաստվում շարունակելու պրոլետարական հեղափոխության գործը։

Մենք ուրախ ենք, մենք տոնում ենք մեր հինգերորդ տարեդարձը. մենք յերգ ու թմբուկով ենք մեր վոտները դնում 6-րդ տարվա շեմքից ներս։

Մեր 5-րդ տարեդարձին յերեսուն հազար պիոներների և հոկտեմբերիկների բերաններից մի անգամ ևս կհնչի՝

— Բանվոր դասակարգի գործի համար մղվելիք պայքարում՝ մենք միշտ պատրաստ ենք։

Թեվ դեռ մեզ կարձագանքեն մեր հետևից գնացող հազար-հազարավոր անկազմակերպ պատանիներն ու յերեխաները։

Բայց միթյն այդ։ Միայն պիտի տոնենք մենք և բացականչենք։ Բայց չէ՞ վոր տոնը մեզ համար մի միջոց է, վորով մենք պիտի հաշիվ տանք մեզ, մեր արածների համար, հիշենք մեր անելիքները։

— Մենք միշտ պատրաստ ենք...

Բայց ավելի յեվ ավելի լավ պատրաստ չե՞նք կարող լինել։ Դրա մասին պիտի մտածենք, դրա վրա պիտի աշխատենք 6-րդ տարում։

Ի՞նչ է ամենից առաջ անհրաժեշտ յուրաքանչյուր պիոների համար։ Մի՞թե պարզ չէ։ Նա պետք է աշխատի լինել բանվոր դասակարգի պայքարի և սոցիալիզմի կառուցման ճակատում այնպիսի մարտիկ, վոր բազմակողմանի զարգացում ունի, բազմակողմանի յե մտածում յեվ բազմակողմանի գործում։

Այդպես պիտի անենք, յեթե ուզում ենք լինել միշտ պատրաստ վոչ խոսքով, այլ իսկապես գործով։

Այդ տեսակետից սխալվում են այն պիոներները, վորոնք արհամարում են մարզանքը, խաղերը, զանազան զվարճությունները։ Մենք պատանիներ ենք. մենք չենք կարող և չպետք է հրաժարվենք այդ բոլորից վորովհետև ծերու-

նիներ չենք. վորովհետև մեր ապագա պայքարն ու աշխատանքը պահանջում են լինել կենսուրախ, առողջ։ Լավ չեն անում, շատ վատ են անում այն պիոներները, վոր մեծ-մեծ գործերից են բռնում, նրանց մասին մտածում, իսկ չեն կարող կարգին մի խաղ խաղալ։

Ի՞նչ կասկած, վոր դրանով չպիտի բավականալ։ Թե չէ բուրժուական-պատանեկական կազմակերպություններն էլ լավ խաղում ու զվարճանում են։ Մենք ասում ենք օրինակ, վոր մեր և սկաուտների մեջ համեմատություն անգամ չի կարելի դնել։ Յեվ այդտեղ վոչ մի սխալ չկա։

Քի՞չ կան առողջ, ուրախ մարդիկ, վոր վոչ մի բանի պետք չեն գալիս։ Դե սկաուտներից էլ ուժեղ, դիմացկուն և հնազանդ անասուններ յեն պատրաստում, վորպեսզի բուրժուաները նրանց վրա նստեն և ուր ուզենան ենտեղ քշեն... Իսկ մե՛նք, — մենք պիտի պատրաստվենք կոմունիզմի գիտակից զինվորներ դառնալ։

Մեր մեծ ուսուցիչ Լենինը դրա համար էր մեզ ասում «Սովորեք, սովորեք, սովորեք»։ Յեվ մենք պիտի հետևենք մեզ, իրար, վոր լավ սովորենք դպրոցում, կոլլեկտիվում։ Մենք պետք է աշխատենք գրքից կյանքից յեվ ամեն տեղ մեր աշխատանքին ու պայքարին օգնող մի բան սովորել։ Գյուղի պիոները պետք է աշխատի գյուղատնտեսական գիտելիքներ ձեռք բերել, գյուղատնտեսական գրքույկներից և այլն, այնպես վոր, սովորի ինչպես ասում են «հողի և անասունի լեզուն» հասկանալ։ Քաղաքի պիոները պետք է արհեստ սովորի, վորևէ գործնական աշխատանքի վարժվի։ Ինչպես տեսնում ենք միայն մարզանքով ու խաղով տարվող պիոներներն էլ լավ չեն անում։

Սակայն Լենինը յերբ ասում էր՝ «Սովորեք» այդտեղ վերջակետ չէր դնում։ Պետք է սովորել գործելով, գործել սովորելով, — այսպես էր նա հասկանում սովորելու գործը։ Յեվ մենք այդպես պիտի սովորենք։ Թե չէ քի՞չ կան գիտուն մարդիկ, վորոնք կյանքում վոչնչի հարկավոր չեն գալիս։ Ահա դրա համար մենք հիմիկվանից ճիշտ է փոքր, մեր ուժերի չափ, բայց վորոշ հասարակական գործնական աշխատանք պետք է կատարենք։ Մենք մեր սովորածներից պետք է կյանքում կիրառենք, օգնելով անգրագիտության վերացմանը, տարածելով մեր ձեռք բերած առողջապահական, գյուղատնտեսական և ուրիշ գիտելիքները և այլն։ Գյուղի փողոցները մաքրելուն և կանոնավորելուն մասնակցելը, չքավորների դաշտային աշխատանքներին օգնելը, անապաստանների մասին հոգ տանելը և այլն, նույնպես հասարակական-գործնական աշխատանքներ են, վորոնք մենք կատարել ենք և ավելի յեռանդով պիտի կատարենք հետագայում։

Յեվ մեր այս աշխատանքների ընթացքում, մեր առօրյա կյանքում միշտ պիտի հիշենք, վոր մենք միջազգային կազմակերպության անդամներ ենք, վոր մեր ղեկավարն է Յերիտկոմինտերնը յեվ մենք նրա առաջնորդությամբ պիտի աշխատենք ու պայքարենք միջազգային պրոլետարական հեղափոխության համար։

Լինել առողջ, սովորել, գործել, չմոռանալ միջազգայինը, — սրանք նոր խնդիրներ չեն, բայց տևական խնդիրներ են, վորոնք 6-րդ տարում էլ դրված են մեր առաջ։

Միայն միշտ դրանցով ղեկավարվելով է, վոր մենք իրավունք կունենանք ավելի հպարտ, ավելի հուժկու բացականչել,

— Միշտ պատրաստ ենք...



ԱՐՑ ԲԺՇՆՈՒՆԻ

# ՄԻ ՔԱՆԻ ՀՈՒՇԵՐ

Տարիների առաջին հնգնոցը անցավ։ Բայց հիշողությունները վառ են և կարծես թե յերեկ լիներ պայքարը սկաուտների դեմ, հոկտեմբերականները...

Դեպքերն անցնում են աչքերիդ առաջ կենդանի, արագ։

Փոքրերը մեծանում են...

1921 թվին «Ծաղիկ» Կոտիկ Վանեցյանը, վորն իր խնդիրը արյունոտ աչքերով ներկայացրեց «պատկոմ» փոխադրվելու համար, այժմ հպարտ է իր հինգ տարվա ստաժի գիտակցությամբ։

Հինգ տարին քիչ չէ։

—

ՅՈԹ ՈՒ ԿԵՍԸ

21 թվի օգոստոս ամիսն էր։

Յես յեկել էյի Ղարաքիլիսայից կոմյերիտմիության առաջին համագումարին։ Սոլոյա Մանուկյանին գտա ամառային ակումբում։ Պարապում էյին պատկոմները. աղմուկ էր, փոշի, իրարանցում. բայց

միաժամանակ աշխուժություն, մանկական ուրախություն:

— Տեսնում ես բացատրեց Սայադյան, ամբողջ ամառայինը *) ողակել են: Սրանք դեռ մի մասն է:

Սայադյան, իր կախարդական սուլիչով արեց իր վերջին կարգադրությունները: Նրա շուրջն հավաքվեցին հրահանգիչները:

7-ը հոգի էյին, պատկոմական յոթը «առաքյալներ» և մեկ էլ Աղասի Պուզյանը, այն ժամանակ դեռ փոքրիկ:

Ընդամենը յոթ ու կես:

Հայաստանի կոմունիստական պատանեկական շարժումը նրանք էյին ցեմենտում:

Աշակերտ «հակաների» առաջին հարվածները նրանք էյին ընդունում:

Իսկ ինչ էյին ստանում — մի փունջ սև չոր հաց:

Լավ տղերք էյին: Ջնայած սոված, դժվարին պայմաններում, բայց անսպառ ջեռանդով աշխատում էյին:

Միակ որը՝ յերբ կուշտ էյին լինում — այդ հուլիսի 1 ն էր:

Հեյ գիտի, հիշում եք հուլիսի մեկի քեֆերը:

### ՍԿԱՈՒՏ «ՍԵՎԵՐՍԸ» ՅԵՎ «ՊՈՊՈ-ԶԱՎՈՐ» ՊԱՏԿՈՄ

Յերկար պայքարի բովով է անցել Հայաստանի պիոներական շարժումը:

Ահա մի էջ:

Ամերիկյան վորբանոցների պատերի հետևը, թաքնված էյին պատկոմների վոխերիմ թշնամիները՝ սկաուտները: Յերեխաները բաժանվել էյին յերկու բանակի. մի մասն սկաուտների կողմն էր, մյուսը պատկոմների, իսկ մնացածը սպասողական դիրքում՝ «չեզոք»:

Պայքարի հաղթանակները հաճախ վորոշվում էյին ջարդված քթերի քանակով: Սկաուտների ղեկավարն ու վոգևորիչն էր Օնիկ Յագմաճյանը: Ամեն որ նա ստուգում էր իր զորքը և աչքը խոլորելով դիմում էր անկարգապահներին.

— Ծո, տղա, պոպոզավո՞ր ես դառել:

«Տղաները» լուռ, կուրծքերը դուրս ցցած, նայում էյին նրա գլխակի փետուրներին:

Իսկ պատկոմներն անցնում էյին նրանց պատերի տակով և յերգում:

Սկաուտ, սկաուտ սևերես
դու այլևս ջահել չես...

Նրանք այդ յերգից կատաղում էյին, ինչպես ցեղը կարմիր կտորից: Այդ «պատմական» փաստ է:

### ՆՐԱՆՑ ԱՌԱՋՆՈՐԴ «ՁՈԽ, ԱՋԸ»

Զարմանալի մարդ էր սկաուտապետ Օնիկը: Այնքան զարմանալի, վոր չեմ կարող լռությամբ անցնել, յերկու խոսք չասել նրա մասին:

Յերբ պատկոմները սկաուտների հետ վիճելիս, կռվելիս համեմատությամբ Օնիկին նմանեցնում էյին մեզ լավ ծանոթ բնտանեկան կենդանիների հետ, Օնիկը կատաղում էր: Նա գրում էր յերկար-յերկար նամակներ և բացատրության մեջ մտնում:

—«Յես ստացած եմ ազնիվ անգլիական կրթություն մը և կհամարվեմ Հայոց ազգին լավ զավակներեն մեկը»...

Փողոցում «ազնիվ» Օնիկը ման էր գալիս մի շարք սկաուտների մշտական ուղեկցությամբ: Մարդահանդեսներին և յերթերի որերին նրա ձայնը կտրվում էր «ձոխ, աջ», «ձոխ, աջ» և «մեկ, յերկու, յերեք, չորս, հինգ, վեց, յոթը, ութը,» գոռալուց:

Իսկ ծե՞ծը.. բայց դրա մասին թող նրա նախկին սկաուտները պատմեն:

Օնիկը սկաուտներին ծեծելու համար մարդակազմությունը լավ էր ուսումնասիրել:

Զարմանալի, շատ զարմանալի մարդ էր Օնիկը,

### ՎՈՆՑ ԵՅԻՆՔ ՃԱՐՈՒՄ

Պատկոմները շատանում էյին: Միտինգները բազմամարդ էյին դառնում և ճառերը ավելի տաք էյին:

Պատկոմական կազմակերպությունը շատ բանից էր զուրկ:

Դահլիճ ուներ, նստարան չկար:

Բայց ամառային ակումբում հատակի տախտակները նոր էյին և... հարցը պարզ էր:

Մի ամսից հետո, մեզ մոտ նստարաններ յեղան, իսկ ամառային ակումբում հատակ չկար:

Ընկ. Մուշեղյանը (Լուսժողկոմատի սոցդաստվարը) գտավ, վոր նստարանները բավականին հարմար են:

— Եւ լավ է, տա Վերաեդից է:

— Ճարել ենք:

Ընկ. Մուշեղյանը բավականացավ և հարցը փակվեց:

Այդ ձևով մենք շատ ուրիշ բան էլ էյինք «ճարել»: Անվերջ օգտագործում էյինք պատկոմական հնարագիտությունը:

—Ընկ. Մուշեղյան, մի զարմանա, չկարծես թե, դու մեր բոլոր գաղտնիքները գիտեիր: Յեթե պատմեմ... բայց չէ, չեմ պատմի...

### ԻՆՉՊԵՍ ԵՅԻՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄ ԴՊՐՈՑՆԵՐԸ

21 թվի վերջերին սկսվեց դպրոցների աշակերտության կազմակերպումը:

Աշակերտների խոշոր մասը դեմ էր մեզ, կամ լավագույն դեպքում «չեզոք»: Լինում էյին դեպքեր, յերբ մեր ուղարկած հրահանգչին քարկոծում էյին կամ «յուրու» կանչում հետևից:

Այսպես, մի վոչ գեղեցիկ որ, հրահանգիչ Հարեթ Մանուկյանը (Մոթալը) յերեվաց, ունենալով իր դեմքի և վերարկուի վրա բարբարոսական հետքեր: Աշակերտները չեյին կազմակերպվել, դեռ Մոթալի գլխարկն էյին «կազմակերպել» ու նրան մի լավ ծեծել:

Դժվար էր աշխատանքը առաջին շրջանում:

---

*) Խմբ. կողմից: Խոսքը Յերևանի ամառային ակումբի մասին է:




**Ս. ԶՈՐՅԱՆ**

Ղարաբաղի մելիքներից մեկը ուներ մի տղա՝ անունը Մանսուր։ Քսանուհինգ տարեկան էր դառել արդեն—ձեռը գործի չէր տվել։ Վորքան էլ հայրն ասում, խրատում էր՝ մի բան արի—չէր լինում։ Մեջքի վրա որերով պառկում էր տանը կամ ամառը բակում, մի ծառի հովում ու քնո՜ւմ։ Մանսուրի ծուլությունը ծեր մելիքին շա՜տ էր անհանգստացնում։ Մտածում էր՝ «մեռնելու յեմ եսոր եգուց, ես տներն ու կալվածները, մալն ու մուլքն ով պիտի պահպանի, յեթե Մանսուրը բան անել չսովորի»...

Մտածում է, մտածում, ու մի որ էլ կանչում է իր ծառաներից հինգ հոգու, թե՝

— Գնացեք անտառ, փայտ բերեք։ Ձեզ հետ էլ, ասում է, Մանսուրին տարեք։ Դուք հինգ հոգի յեք, ասում է, հինգ եշ վերցրեք ձեզ համար, մի եշ էլ վերցրեք Մանսուրի համար։ Ամենքդ ձեր իշաբեռը կշինեք, ու կթողնեք, վոր Մանսուրն էլ իրա իշի բեռ փայտը շինի...



Ու խիստ հրաման է տալիս, վոր ծառաները վոչ մի բանով չօգնեն Մանսուրին։ «Թողեք ինքն անի, սովորի», ասում է։

Ծառաներն եշերն առաջ արած գնում են անտառ՝ Մանսուրն էլ հետները։

Հասնում են անտառ թե չե՝

— Դե ամեն մարդ, ասում են, թո՛ղ իրա եշը բարձի։

Ծառաներն ընկնում են դես ու դեն. էստեղից, ենտեղից, ես ծառի տակից, են ծառի գլխից չոր փայտ են հավաքում, իսկ մելիքի տղան եշը թողնում է եշերի մոտ, մի լավ շվաք տեղ է գտնում ու պառկում։

Ծառաները փայտը բերում են, իրենց եշերը բարձում։

— Դե վեր կաց, մելիքի տղա, ասում են, փետ բեր, դու էլ քու եշը բարձի։

— Եշի հերն էլ անիծած, ասում է մելիքի տղան, փետի հերն էլ անիծած։ Ով ուզում է թող բարձի։

— Մելիքն ասել է, վոր քու եշը դու բարձես, ասում են ծառաները։

— Մելիքի հերն էլ անիծած, ձեր հերն էլ անիծած, ասում է Մանսուրն ու տեղից վեր չի կենում։

Ծառաները տեսնում են ճար չկա, նորից դես ու դեն են ընկնում, փայտ են հավաքում, բերում են Մանսուրի եշը բարձում։

— Դե, գնանք մելիքի տղա, ասում են։

— Գնալու հերն էլ անիծած, ասում է, ձեր հերն էլ անիծած։ Գնում եք դուք գնացեք։ Հազիվ մի շվաք տեղ եմ գտել։

— Վե՛ր կաց, ասում են, գոնե քու եշը քշի։



— Եշի հերն էլ անիծած, ասում է, ձեր հերն էլ անիծած։ Քշում եք դուք քշեցեք։ Յես բեզարած եմ, չեմ կարող։

Ծառաները միտք են անում, վոր յեթե առանց Մանսուրի գնան տուն՝ մելիքը կըբարկանա, նա իրենցից տղա կուզի։ Մյուս կողմից էլ՝ որը մթնում է։ Միտք են անում՝ վո՞նց անեն, վոնց չանեն, վերջը՝

— Բերեք, ասում են, մեզարի մեջ դնենք, տանենք։



Էդպես էլ անում են։ Մելիքի տղին դնում են մեզարի մեջ ու չորս հոգով՝ ամեն մեկը մի ծայրից բռնած՝ տանում են։

Զորբը Մանսուրին են տանում, մեկն էշերն է քշում։

Գնում են անտառի միջով։

Մի քշող—վեց էշ, անտառամեջ... Մեկն էս կածանովն է գնում, մյուսն էն կածանն է ծռվում. մի ուրիշը ծառի յն դեմ լինում, բեռը ծռում, մեկելը խոտով է ըլում։ Եվ քշողը չի իմանում ի՞նչ անի. սրա բեռն է ուղղում—նա յն կորչում, նրան է յետ տալիս—մի ուրիշն է յետ ընկնում։

Գլուխը կորցնում է չի իմանում ի՞նչ անի։ Վերջը թե՝

— Ախպեր յեկեք ձեր էշերը քշեցեք. յես կարալ չեմ։

Ասում է, իր էշն առաջն անում ու քշում։

Մեզարի ծայրը բռնողները կանչում են.

— Դե լավ, ասում են, արի դու մեզարի ծերը բռնի, թող մեզանից մինը գա էշերը քշի։

Սա չի՛ վոր չի՛։

— Վո՛չ մեզարը կբռնեմ, ասում է, վոչ էշերը կքշեմ։

Այդ ժամանակ, մեզարի մեջ պառկած մելիքի տղան բարկանում է սաստիկ.

— Բա էլ ինչի՞ համար ես յեկել, ասում է, վոր վո՛չ մեզարի ծերն ես բռնում, վո՛չ էշերն ես քշում․․

Այդպես էր Մելիքի տղան։







ԳՈՒՐԳԵ՛Ն ՄԱՀԱՐԻ

# ՊՈՒՃՈՒՐ ԻԼԻՉԻ ՀԵՏԵՎԻՑ

ԱՄԱԼԻԱՅԻՆ ՅԵՎ ԹԱՄԱՐԻՆ

I

Էդ էլ մի օր էր էլի...
մահը ընկեր Լենինի,
էդ չար բոթը անարկու
թեվ էր առել աշխարհում։

Մենք էլ մեզ մոտ լսեցինք,
տխրեցին մեր սրտերը,
գարնան էլ չբացվեցին
Հայաստանի վարդերը։

Հայաստանի վարդերը
տխուր. տխուր կռացան,
ու բարձրացավ արեվը
գունատ, գունատ, վոսկեծամ։

Շուտ զարթնեց մեր Նինելը,
ու բարձրացավ անկողնուց,
առավ յուղոտ շինելը.
մտավ մեջը, ելավ դուրս...։

II

— Ո՞ւր է կորել շինելը,
այ քեզ հրաշք, այ քեզ բան.
կատաղել են շները,
գո՞ղ է մտել այգեստան...

Վո՞նց էր մտել տան նիրը,
ենց շինելի՞ս կարոտ էր...»
ս խոսողը հենց ինքը,
կոմսոմոլիստ Կարոն էր...

Դրսում ձյուն ու փոթորիկ,
քամին յերգում է անքուն,
Իլիչի մահն է կրկին
շրջում փոքրիկ քաղաքում։

Տուն է յեկել, վոր հագնի
իր շինելը ու գնա,
մինչեվ գիշերը կանգնի
Ցեկայի մոտ հերթապահ...

Ո՞վ է տարել շինելը,
գոնե ձմեռ չլինե՞ր...
ուր է կորել Նինելը...
Վոչ շինել կա, վոչ Նինել...



III

Մտած յուղոտ շինելում,
մեր Նինելը անվարան,
ձների դեմ կռվելով,
գնաց մինչեվ կայարան։

Դես-դեն ընկավ հրելով,
հետո մի դուռ նա գտավ,
վրեն մեծ-մեծ գրերով
պարզ գրած էր—«ՀԵՐԹԱՊԱՀ»։

Դուռը ծեծեց, ներս մտավ,
ու հազաց մեծ մարդու պես,
ենտեղ մի մարդ կար նստած,
— բարեվ,—ասավ,—բարեվ ձեզ...

— Բարեվ,—ասաց են մարդն էլ,
աչքի տակից նայելով,—
էդ ո՞ւմ շինելն ես հագել,
ի՞նչ ես ուզում, այ խելոք...

Էդ վո՞նց թե ում շինելը...—
ուզեց գոռալ բարձրաձայն,
հետո հիշեց Լենինին,
սիրտը էլի քաղցրացավ։

— Յես գործ ունեմ,—ասավ նա,—
յես Նինելն եմ մի խոսքով...
— Ե՞, գնում ես. . կազարմա՞...
— Չէ՛... ուղարկեք ինձ Մոսկով։

— Վո՞նց թե, խելո՛ք, ի՞նչ Մոսկով,
յեվ նա ուզեց ծիծաղել.
բայց հանեց խոր մի հոգոց,
հոգոց հանեց ու նայեց։

— Մոսկով պիտի գնամ յես,
բերեմ պուճուր Լենինին.
պահեմ նրան, խնամեմ,
վոր նա տխուր չլինի։

— Դու տուն գնա, դժվար է
հիմի նրան բերելը...
— Յես նրան լա՛վ կը պահեմ...
— Բայց չէ վոր նա մեռել է...

— Գիտե՛մ, մեծն ես դու ասում,
են, վոր սեյումն է նստած.
յես պուճուրին եմ ուզում,—
ասավ Նինելը վստահ։

— Ենտեղ տխուր կը լինի,
լաց կը լինի հիմա նա,
ընկեր, Մոսկով ղրկի ինձ,
թող ախպերս չիմանա։

— Հերըդ ո՞ւր է։—
— Սպանվեց...

digitised by A.R.A.R.@.

Կարոն եղպես է ասում.
մի հատ էլ մեր է յեղել...
Են էլ մեռել է վաղուց։

Մոսկով պիտի գնամ յես,
բերեմ պուճուր Լենինին...» —
հերթապահը մտածեց
աչքը ընկավ շինելին։



— Ապա արի մի մոտիկ,
տես ինչ մեծն է, ինչ յերկար,
տես ինչքան լայն է գոտին...
Գրպանումդ ի՞նչ թղթեր կան...

Ու դուրս հանեց գրպանից
վկայական, թուղթ, մանդատ,
կասկած ընկավ նրա սիրտ,
մեկ-մեկ թղթերը կարդաց։

Վախը բռնեց Նինելին,
հետո իրեն դրստեց.
— Եղ՝ ախպերըս տվեց ինձ,
ասավ, ճամբին կմրսես։

«Սուտ ասեցիր, այ Նինել...»
ու բռնեց նոր փորացավ.
Հիշեց պուճուր Լենինին,
սուտ ասելը մոռացավ։

— Ախպերս տվեց, հա՛, ասավ
ցուրտ է էնտեղ, պետք կը գա.
կը հագնես կը տարանես,
յես հագա ու յեկա.

— Վո՞րտեղ է նա աշխատում...
— Կոմսոմոլում... Ցե...Ցեկա...
— Փորձե՛նք...—Ասավ նա հետո...
հեռախոսը զրնգաց։

Նինելի գույնը թռավ,
թողեց շինելը նրան,
Ու պո՛ւկ... փախավ, ո՞ւր գնար...
մի բունջ գտավ ու մնաց։

IV

— Էնտեղ տխուր կլինի,
լաց կլինի հիմա նա.
Մոսկով ղրկեք Նինելին,
ու թող Կարոն չիմանա։

Մոսկով ղրկեք Նինելին
բերի պուճուր Լենինին,
Կարոն նրան կը տեսնի,
ու Նինելին կը ների։

Նա կը գտնի Իլյիչին,
արթուն լինի թե քնած։

Լավեց ձենը սուլիչի,
Ու մի զանգ էլ զիլ զնգաց։

V

— Մերս էնտեղ է, ինձ էլ ներս տար,
տես, չեն թողնում, այ մորքիր...
նայեց կինը, աղջկան ոտար,—
— Վո՞ր վագոնում...
—Ձեր մոտի։

Բռնեց ձեռքից ու ներս տարավ,
պահապանը խմա՞ծ եր...
ու «մորքիր»-ը յերկար բարակ
սրան դես դեն ման ածեց։

— Ո՞վ է մերը, ո՞վ է տերը,
ո՞վ է կորցրել իր փորդուն...
մեկ էլ սուլիչ...—թող իմ ձեռք.
յես կը գտնեմ։
— Դո՛ւմ... դո՛ւմ... դո՛ւմ...
Վագոնները
շրախկ-թրախկ,
փոնց փոր ներսը
ընկած կրակ,
բա՛-բա՛, բո՛-բո՛,
բո՛-բո՛, բա՛-բա՛,
սուսլիկ, սուսլիկ
ու խաբերա,
Նի-նե՛լ, Նի-նե՛լ,
շի-նե՛լ, շի-նե՛լ,
այ դո՛ւ, այ դո՛ւ,
այդ ո՞ւր, այդ ո՞ւր։—
Գիշեր, ճրագ,
շրախկ, թրախկ,
անիվները
առած կրակ,—
քնել է նա
մի մութ քնջում։
իսկ գնացքը
Վո՛նց է թռչում...։

IV



Կանգնել է Կարոն Ցեկայի դռան,
հրացանը ձեռքին ու գլուխը ցից,

թափվում է ձյունը ուսերի վրա,
վզզում է ցուրտը, անցնում փողոցից։

Մեծ ղեկավարի կսկիծը սրտում,
ահա կանգնել է նա պատվո պահակ,
անցնում են մարդիկ, ցրտից սրթ-
սրթում,—
ո՞ւր է Նինելը ես ցրտին հիմա։
Ո՞ւր է Նինելը, շինե՞լը հապա,
գոնե նա լիներ Նինելի հագին։
Հերթը վերջացավ։
— Ի՞նչ կա, հերթապահ...
— Կայարանից ձեզ հեռագիր։

«Գտել ենք ձեր շինելը
ինչ վոր փոքրիկ աղջկա մոտ,
նրա անունն Նինել եր,
շինելը կա ինքը վոչ...»։



— Ես անհոգի ձյուն ցրտին
ինչ է յեկել քո գլխին,
շուտ, կառապան, կայարան...—
կառքը թռավ.—«խաբարդա՜...»։

— Շուտ կառապան, կայարան,
քո եսպան եմ չար աղջիկ,
շուրջը ձմեռ, ցուրտ բորան,
շինել հագնի ու փախչի՞...

## VII

. . . . . . .

. . . . . . .

—Նրա մտավ ասավ թե՝ յես Նինելն եմ,
խնդրում եմ վոր ինձ Մոսկով
ուղարկես,
Հենց աչքս ընկավ նոր-նոր շինելին՝
եսպես ու եսպես
եսպես ու եսպես...

Դուրս յեկավ Կարոն շինելը ձեռքին,
— Նինել, այ Նինել, այ վոչ ու
չքված...—
ձյունը թափվում է ճերմակ յերկնքից,
շինելը կա,
ինքը չկա...

Հետո հեռագրեց կայարաններին,
— «Եսպես ու եսպես մի աղջիկ եր գա,
խնդրում եմ գտնել, յետ ղրկել ինձ,
շինելը կա,
ինքը չկա...»։

## VIII

...Ձյունոտ դաշտերում,
դաշտերում անմարդ
Նինելը շրջում է մոլոր,
հեռու յե, հեռո՜ւ,
ճանապարհն անծայր,
Հիմի յել իջնում է ձորով։

Լալիս է մեկը
այնտեղ ծառի տակ,
այդ ո՞վ է, չի տեսնում վոչինչ,
իջնում է մեկը

ծանր ու սպիտակ,
թվաց, վոր այդ ձայնն է Իլիչի...



— Նինել,—կանչում է,
յես մենակ եմ, տես,
այս գիշեր մեծ պապը մեռավ,—
— Ինչո՞ւ, ինչո՞ւ ես
ձորում մնացել...
— Նինել, շուտ, շինել բեր, կամ
վերմակ...

Այնտեղ ծառի մոտ,
ձյուների վրա
փոքրիկ Իլիչն է սրթսրթում,
փոքրիկ բռունցքը
աչքերին դրած

կանչում է—ոգնությո՜ւն, ոգնու-
թյո՜ւն...

Նինելը թռավ
ժայռի կատարից,
մութ ձորը մթնեց ավելի,
Իլիչը կորավ
նրա աչքերից,
ու սարսափը բռնեց Նինելին։



Այնտեղ ծառի տակ
ոռնում է մի գայլ,
նայում է Նինելի վրա,
նայում է ագահ,
ոռնում է ելի,
ու մոտենում է քայլ առ քայլ։

Ձե, չե, գայլ չի,
կորած շինելն է,
օրորվում է ծառից կախած.
ուզում է ճանկի
ու հագնի ելի,
ես ցրտին մի լա՜վ տաքանա։

Ուզում է ճանկի...
անշինել—Նինե՜լ, եդ ո՞ւր ես,
մրսում ես, այ, տե՜ս...
ձայնը անհանգիստ
խեղդվող ձայնի պես,
այդ Կարոն է կանչում այդպես։



— Գալիս եմ, դու կա՜ց...
կանչում է վարից,
սկսում է արագ վազել,
տեսնում է հանկարծ
աչքերը գայլի,
ճչում է...

. . . . . . .

Ծա՛նր յերազ եր . . .
Բո՛-բո՛-բո՛-բո՛
բա՛-բա՛-բո՛-բո՛,
շուրջը աղմուկ



ու դմփդմփոց,
դուրսը մութ և,
ցո՛ւրտ և, ցո՛ւրտ և,
Նի-նե՛լ, Նի-նե՛լ,



շինել, շինել,
ի՞նչ եր, փայլեց,
զա՛յլ և, զա՛յլ և,
Կա-րո՛, Կա-րո՛,
դե տո՛ւր, դե տո՛ւր,
քարո՛վ, քարո՛վ,
հե՛յ, ոգնությո՛ւն...

Զառանցում և ծանր տենդում,
Վագոններ փո՛նց են թնդում...։

IX

Յերկու կարմիր ածմեյցիներ,
վազոն մտան.



— Նինել, Նինել, ո՞վ և Նինել...
Նինելին գտան։

Նա տենդում եր կրակ կտրած,
ու տենդում մրսում,
շինելի տակ աչքին նրան,
ու դրքին բուրսուն։

Բժիշկ յեկավ, քննեց, զննեց,
ու շուրջը նայեց.
— Ճանապարհին շատ և մրսել,
պետք և տաք պահել։

Հնազանդեցին վոր գտել են
«դաշտաղ» Նինելին,
Կարոն եյ թե — «վոտազ դրկեր» ..
ու եյի՛ եյի՛...

Հետո մի մարդ նրան դրավ
տաքուկ կուպեյում,
նիհարել եր դեմքը նրա...

— Տո՛ւն, տո՛ւն, դեպի տո՛ւո՛ւո՛ւն...։

X

Այնտեղ տխուր կը լինի,
լաց կը լինի հիմա նա,
պուճուր, պուճուր իմ Լենին,
անուշ, անուշ յերեխա։

Դրսում ձյուն ու փոթորիկ,
իսկ Մոսկովը շա՜տ հեռու,
մեծ պապի մահն և նորից
շրջում ձյունոտ դաշտերում։

Հենց վոր գարունը բացվի,
բուրեն դաշտերը փարթամ,
նորից գնացք կը նստի,
նորից կրնկնի նա ճամբա։



Ծաղիկներ կը հավաքի
գարնանային դաշտերից,
փունջեր, փունջե՜ր կը կապի
Հայաստանի վարդերից։

Պուճո՛ւր Իլիչ, մի՛ տխրի,
ու աչքերդ մի թացի,
կը գա, կը գա Նինելը
հենց վոր գարունը բացվի...



ՀՐԱՄԻՐ

# ՊԻՈՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԸՆՏԱՆԻՔՈՒՄ

### Պետք է խուսափել

*Յերբ խոսք է բացվում ընտանիքում աշխատելու մասին, շատ պիոներներ այսպես են մտածում.*

*— Գիտե՞ս Արփիկ, յերբեք չեմ սիրում տանը մնալ ու աշխատել։ Ես է անկողինը հավաքի, ջուր բեր, ջուր թափի։ Զանգլան գնում ե։*

*— Ընկերներ, մենք ենք նոր կենցաղի հիմքը, նրա տարածողները։ Հարկավոր է մեր ծնողներին մասնակից դարձնել հասարակական կյանքին, տանել նրանց ժողով-միտինգներ։*

*Ես բոլորը շատ գեղեցիկ, կամ ինչպես կասեյիք դուք «ճռճռան» խոսքեր են։ Բայց յերբ հարց տանք—եդքան «ճռճռացնելուց» հետո՝ ինչ եք արել, ընկեր պիոներներ։*

*Դուրս է գալիս, վոր համարյա վոչինչ չի արված։*

*Պիոները լվացք է անում։*

*Ուրիշ բան է աշխատանքը կոլեկտիվում, ակումբում... թե չէ ընտանիքը, ինչ...*

*Ճիշտ է, պիոներների համար կոլեկտիվի աշխատանքն առաջին տեղը պիտի գրավի։ Բայց չպիտի մոռանալ, վոր աշխատանքն ընտանիքում պիոների պարտականություններից մեկն է։*

*Յեվ իսկապես մի՞թե այնպես անհետաքրքիր է ընտանիքում աշխատելը, ինչպես պատկերացնում են պիոներներից վոմանք։*

*Բոլորովին վոչ։*

*Ընտանիքը աշխատանքային մի փոքրիկ կոլեկտիվ է, ուր աշխատում են բոլորը և պիոներները հեռու չպիտի մնան մյուսներից։*

*Հիմա թվենք մեկ-մեկ, թե ինչ անելիքներ ունեն պիոներներն ընտանիքում։*

### Օգնենք մեր ծնողներին

*Պիոներներից շատերը կոլեկտիվի հավաքույթներում, կոկորդները պատռելով ճչում են.*

*Մեր կոլեկտիվները պետք է կռվեն այս յերևույթի դեմ։ Պիոների համար որենք պիտի լինի—յեթե խոսեցիր, խոսքդ գործի վերածիր։*

### Ինչպես օգնել

*Ամեն մի պիոներ գիտի, վոր ընտանիքում՝ տան տնտեսության կազմակերպման, յերեխաներին խնամելու աշխատանքը, մի խոսքով ընտանիքի բոլոր գործերը ծանրացած են գլխավորապես մոր վրա։*

*Յեվ ահա մինչև նա չթեթևանա տան աշխատանքներից, իրեն համար ազատ ժամեր չունենա, կարո՞ղ է նա մասնակցել հասարակական կյանքին։ Կարո՞ղ է միտինգ կամ ժողով հաճախել և այլն։ Իհարկե վոչ։*

*Մայրը կերակուր պատրաստի իր յերեխաներին կերակրելու համար, թե՞ ժողով գնա։*

*Ահա այստեղ է, վոր պիոներն օգնության պիտի գա իր մորը, ծնողներին։ Պիոները պիտի աշխատի ամեն կերպ թեթևացնել ծնողների աշխատանքը։*

*— Ի՞նչով կարող ենք օգնած լինել մեր ծնողներին տանը,—կհարցնեք դուք։*

*Պիոներական ասածվածք կա, վոր—յեթե մայրդ քեզ ջրի յե ուղարկում մի կարծիր, վոր նա շահագործում է քեզ։ Ահա՝ մի դույլ ջուր բերելը, սեղաշորն առավոտյան հավաքելը, թեյ պատրաստելը, հոր կամ մոր վորոշ հանձնարարությունները կատարելը և այլն, ահագին նշանակություն ունեն այն տեսակետից, վոր թեթևացնում են ծնողների, գլխավորապես մոր աշխատանքը։*



**Պիոները կազմակերպում է փոքրերի ընթերցանությունը**

*Այդ միջոցով միայն պիոներները ծնողների համար հնարավորություն կստեղծեն մասնակցելու հասարակական կյանքին, աշխատանքներին։*

**Մեր փոքր քույրերի ու յեղբայրների համար**

Ամեն մի պիոներ տանը ունի փոքր քույրեր ու յեղբայրներ։ Պիոների



Պիոները թեյ է պատրաստում

գործը պետք է լինի նրանց կապել պիոներական կազմակերպության կյանքին ու աշխատանքներին։

Ի՞նչով կարող է նա այդ անել։

Ամենից առաջ խաղի ժամանակ, կամ թե չէ փոքրերին հավաքելով, պիտի պատմել նրանց պիոներների մասին։

Անհրաժեշտ է նույնպես նրանց համար կարդալ պիոներական գրքեր, հանդեսներ, խաղեր, զվարճալիքներ կազմակերպել և այլն։

**Պիոներական անկյունը ընտանիքում**

Պակաս նշանակություն չունի նաև պիոներական անկյունի կազմակերպումը։

Պիոներական անկյունը ընտանիքում, մի հայելի պիտի լինի, ուր արտացոլվելու յե պիոների վողջ կյանքը կոլլեկտիվում և թե ակումբում։

Այդ անկյունում պիտի կենտրոնացնի պիոներն իր ունեցած գրականությունը, դասագրքերը, պլակատները և այլն։

Պիոներն այնտեղ պետք է դասավորի նույնպես իր հագուստները, պայուսակը և պիոներական այլ իրեղենները։

Պիոներն այդ անկյունում պիտի պատրաստի իր դասերը, ինքնակրթությամբ զբաղվի, փոքրերի համար զրույց, ընթերցանություն կազմակերպի։

**Ընտանիքին ավելի մոտ**

Շատ լավ կլինի, յեթե յերբեմն պիոներական ողակի հավաքույթները գումարվեն պիոներներից մեկին ու մեկի տանը։

Այս ճանապարհով ծնողներն, ավելի լավ կծանոթանան պիոներական կազմակերպության հետ։ Նրանք կտեսնեն, թե ինչ են անում իրենց յերեխաները պիոներական շարքերում։

**Տարածենք մեր լավ սովորությունները**

Պիոներն ընտանիքում կուլտուրական, առողջապահական սովորությունների տարածողը պետք է լինի։

Առողջապահական են բոլոր կանոնները, վորոնք նա սովորել է, կուլտուրական են սովորությունները, վորոնք նա ձեռք է բերել կոլլեկտիվում, այդ բոլորն անհրաժեշտ է, վոր նա փոխադրի ընտանիք։

Այս առաջին հայացքից թեթև, աննշան բան է յերևում։

Բայց յեթե քիչ մտածենք, կտեսնենք, վոր մենք դրանով խոշոր գործ ենք կատարում։

Շատ ընտանիքներ կան, վորոնք չեն հետևում սենյակի, ոդի մաքրությանը։ Քնում, վեր են կենում, շնչելով փչացած ոդ։ Վոմանք էլ կեղտի մեջ կորած չեն էլ մտածում մաքրության մասին։

Ահա պիոներն է, վոր վճռական պայքար է մղելու ընտանիքում—առողջապահության համար. միշտ հիշելով, վոր առանց առողջապահական տարրական կանոնները կիրառելու—չի կարելի առողջ մնալ։

**Ով պետք է ղեկավարի**

Այնուհետև պետք է կազմակերպել պիոներական կազմակերպության և ընտանիքի մերձեցման յերեկոներ։ Ծնողներին պիոներական աշխատանքներին ծանոթացնելու նպատակով։ Կոլլեկտիվի պատի լրագրում անհրաժեշտ է լուսաբանել պիոներական աշխատանքն ընտանիքում, չմոռանալով վոր կարելի յե ծնողներին մասնակից դարձնել նրա աշխատանքներին։

Բոլոր պիոներները պետք է լավ իմանան, վոր այդ ամբողջ աշխատանքը պիտի ղեկավարի կոլլեկտիվը։ Նրանից է, վոր ամեն մի պիոներ (ողակների միջոցով, կոլ. խորհուրդ) ցուցմունքներ պիտի ստանա իր աշխատանքի համար։

Ահա են հիմնականը, վոր մենք ունենք կատարելու ընտանիքում։

**ԽՆԿՈ ԱՊԵՐ**

## ԴԵՊԻ ԼԱԳԵՐ

Բոցերով ալվան
վառվեց արշալույս.
գնում ենք լագեր,
տղերք, «մեկ, յերկու։»

Մենք Հոկտեմբերի
մատաղ մարտիկներ,
«մեկ, յերկու, յերեք,»
մենք պիոներներ։

Ե՜, մնաս բարով,
կարմիր Յերևան,
գնում ենք լագեր
շոգերից ամռան։

Բնության ծոցում
յերգ, խաղ ու մարզանք.
սարալանջերին
վրաններ կտանք։

«Մեկ, յերկու,» առա՜ջ,
ինչ թա՛րմ է, կանա՜չ.
«մեկ, յերկու,» արա՛գ,
ծագեց արեգակ։

Մութ յերեկոներ
կվառենք խարույկ.
թմբո՜ւկ, գի՛լ թմբա,
աշխուժ ու առույգ։

Մենք Հոկտեմբերի
մատաղ մարտիկներ,
«մեկ, յերկու, յերեք»
գնում ենք լագեր։



# ՊԻՈՆԵՐՆԵՐԸ ՈԳՆԵՑԻՆ

Գարուն էր․․

Բնությունը վերածնվել էր․ ծառերը կանաչել, թռչունները ուրախ ծլվլում էին, մեղուները տրտըզալով թռչկոտում էին մի ծաղկից մյուսը և դեղին փոշուց ծանրացած վտներով գնում իրենց փեթակները։ Հեռվից լսվում էր մեր մանուկների ուրախ ձայնը։ Դաշտում հնչում էր գյուղացու հոռովելը և տրակտորի հաղթական յերգը։

Ամեն ինչ ուրախ էր, գարուն էր ու նոր։

Քաղաքի հետ ընկած փողոցներից մեկում գտնվում էր մի փոքրիկ սպիտակ տուն, կարմիր ներկած լուսամուտներով։ Դա կար անող Սուսանի բնակարանն էր։

Փոքրիկ մահճակալի վրա պառկած էր հիվանդ Սուսանը։ Նրա դալկացած դեմքը արտահայտում էր խոր վիշտ ու տանջանք։ Բաց պատուհանի մոտ, նստած էր նրա աղջիկը — 12 տարեկան սևաչյա Լուսիկը և նայում տան դիմաց գտնըվող դաշտին, վորտեղից յերևում էին պիոներները կարմիր փողկապներով։ Նրանք ինչ վոր աշխատանք էին կատարում և միաժամանակ յերգում, վորից Լուսիկը լսեց միայն այսքանը «Մենք ենք որ կյանքի հիմքը, սա յե լոզունգը»․․․

Այդ ժամանակ Սուսանը տաքությունից այրվող շրթունքները բաց արեց և ջուր խնդրեց։

Լուսիկը սթափվեց ու վազեց նրա մոտ։ Մայրը ջուրը խմեց,



ընկավ բարձին ու սկսեց նորից զառանցել։

Լուսիկը հուսահատվել էր, չըգիտեր ինչ աներ։ Մայրը արդեն 10 օր է հիվանդ էր և դեռ վոչ մի բժիշկ չէր յեկել։ Տան ամբողջ պարենը վերջացել էր և մնում էր Լուսիկի մոտ միայն մի քանի կոպեկ։

Նա ուրիշ վիշտ էլ ուներ․ մայրը հակառակ էր նրա պիոներ լինելուն, դրա համար էլ նա թաքուն էր հաճախում հավաքույթներին։ Բայց ինչ վոր մայրը հիվանդացել էր, վոչ մի հավաքույթի չէր գնացել և հնարավորություն էլ չուներ կոլեկտիվին հայտնելու։

Լուսիկը մտազբաղ նստած էր, յերբ դուռը ճռճռալով բացվեց և ներս մտավ սպիտակ թաթիկներով փիսոն։ Լուսիկը ուրախացավ տեսնելով նրան։ Այդ 10 օրվա մեջ Լուսիկն ու կատուն շատ էին մըտերմացել։ Նա գրկեց կատվին, շոյեց փափուկ մեջքը և սկսեց կամաց խոսել նրա հետ։

— Մուխրիկ ջան, մայրիկը շո՞տ կը լավանա։

Մուխրիկը մռռաց, մեջքն ուռեցրեց և փափուկ յերեսը քսեց Լուսիկի ձեռքին։

— Հա՞ ուրեմն, շուտ կը լավանա և յես կկարողանամ հավաքույթի գնալ, այնպես չէ՞, սիրուն Մուխրիկըս։

Մուխրիկը մռռաց-մռռաց, տեղավորվեց Լուսիկի ծնկներին ու քնեց։

Ամեն ինչ լռեց։ Լուսիկը դարձյալ մենակ մնաց։

* * *

Արդեն մթնում էր, արևը մայր էր մտել, յերբ պիոներ Վարսիկի զանգուր գլուխը ներս նայեց Լուսիկենց պատուհանից։ Նա ձեռքով նշան արեց։ Լուսիկը տեսնելով իր սիրելի ընկերուհուն վեր ցատկեց ու դուրս գնաց։

— Լուսիկ ջան, ինչու հավաքույթի չես գալիս, չինի մայրդ իմացել է ու թույլ չի տալիս։

— Չե, 10 որ ե արդեն մայրիկը շատ հիվանդ ե, փող ել չունենք, վոր բժիշկ հրավիրենք. չգիտեմ ինչ անեմ...

Վարսիկի ուրախ դեմքը մռայլվեց: Նա շատ վշտացավ: Մի քիչ Լուսիկին հույս տվեց ու գնաց:

*
* *

Կես ժամից հետո շրջանային բժիշկը Վարսիկի և մի քանի ուրիշ պիոներների հետ մտավ Լուսիկենց տուն: Բժիշկը ուշադրությամբ քննեց հիվանդին, դեղ գրեց ու գնաց, Պիոներներից մեկը իսկույն գնաց դեղատունը դեղը բերելու: Յերկու որ հետո Սուրիկը, Վարսիկն ու Համոիկը յեկան Լուսիկենց տուն և նրան տվին 7 ռուբլի ու կես: Լուսիկը շատ զարմացավ և չեր ուզում վերցնել, բայց նրանք համոզեցին, վոր այդ մի փոքրիկ ոգնություն ե, վոր հասցնում են պիոներները: Պատմեցին





թե ինչպես կիրակի որը ցերեկույթ են կազմակերպել Լուսիկին նյութական ոգնություն հասցնելու համար, վորպեսզի նրա մայրը լավ սնվի՝ ու շուտ կազդուրվի:

*
* *

Արևի ուրախ ճառագայթները ներս եյին ընկել լուսամուտից և շոյում եյին Սիրանի գունատ դեմքը, վոր փաթաթված վերարկուի մեջ նստել եր բաց լուսամուտի մոտ և հանգստանում եր իր ծանր հիվանդությունից հետո...

Նա մտածում եր, թե վորքան սխալ եր առաջ, յերբ կարծում եր թե պիոներ լինելը անպետք բան ե, թե յերեխաները փչանում են, թե պիոներական կազմակերպության մեջ բացի ժամանակ կորցնելուց վոչինչ չեն անում...

Նա հիմա համոզվել եր, վոր փոքր հասակից պիոներների մեջ զարգանում եր ուրիշի կյանքով ապրելու, ուրիշին ոգնություն հասցնելու ձգտումները:

Լուսիկը ներս մտավ Մոխիրիկին գրկած, մայրը նկատեց նրա յերեսին վախկոտ և աղերսող ժպիտ...

— Լուսիկ ջան, հավաքույթի գնա, քանի չես ուշացել, ասաց նա ուրախ ժպիտով...

Լուսիկի աչքերում ուրախության ու յերջանկության արցունքներ փայլեցին:

Պատկեր՝ **Սեվակ**

Ք. ՏՐՈՒՀԱՐ

# ԹՈՄՄԻ ԲՐԱՈՒՆԸ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄ Ե ԲՋԻՋ

*(Ամերիկական պիոներների «Յանգ Կոմրեդ»- «Պատանի ընկեր» լրագրից)*

Թոմմի Բրաունը նայեց պատմության հարցերի տետրին և հորանջեց: Նրան ձանձրացրել եյին այդ հին «մեռածածին» հարցերը: Յեվ նա զարմանում եր, թե ինչու՞ միսս Գրինը շատ հաճախ ե այդպիսի հարցեր տալիս:

Յերբ վոր Թոմմը կարդաց տետրի առաջին յերեսը, նրա դեմքի ձանձրական ժպիտը փոխվեց կենդանի հետաքրքրության:

Այս հարցերը նրան շատ հետաքրքրեցին:

1. Ո՞վ ե աշխարհիս մեծագույն մարդը:

2. Հավանու՞մ ես Միացյալ Նահանգների կյանքին:

3. Վո՞ր յերկրում գերադասում ես ապրել:

## ԹՈՄՄԻՆ ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ՀԱՐՑԵՐԻՆ

— Ահա — ասաց Թոմմին, առաջին հարցին նայելով: — Նա կարծում ե, վոր մեծագույն մարդ համարում եմ Ջորջ Վաշինգտոնին կամ Լինկոլնին: Բայց դուք սխալվում եք միսս Գրին, յես Լենինի անվան խմբի պիոներ եմ և յերբեք չեմ խաբի:

Համարձակ ու համոզված կերպով նա պատասխանեց առաջին հարցին:

«Իմ կարծիքով աշխարհիս մեծագույն մարդը Լենինն ե»:

Քիչ մտածելուց հետո, Թոմմին յերկրորդ հարցին պատասխանեց այսպես:

«Միացյալ Նահանգներում կյանքը ինձ յերբեք դուր չի գալիս, վորովհետև այդ յերկիրը կառավարում ե վոչ թե ժողովուրդը, այլ կապիտալիստները: Կարծելով, վոր մենք ազատ յերկրում ենք ապրում, խոշոր սխալ գործած կը լինենք: Մեր յերկրում իշխանության գլուխ են կանգնած Դ. Պ. Մորգանը և ուրիշ կապիտալիստներ: Նրանք մշակում են իրենց համար ձեռնտու որենքներ, վորոնք ծանր բեռի նման չոքում են բանվորների ուսերին:

Թոմմին ժպտաց «Համոզված եմ վոր մի լավ դաս կստանամ այս խոսքերիս համար. Բայց դրան յես արժանի եմ:

Թոմմին անցավ յերրորդ հարցին պատասխանելու: «Սրան հեշտ ե պա-

տասխանել»-ասաց նա և գրեց. «Ես ցանկանում եմ ապրել Խորհրդային Ռուսաստանում, որովհետև նա միակ երկիրն է, որտեղ իշխանությունը գտնվում է բանվորների և գյուղացիների ձեռքին»։

### ԹՈՄՄԻՆ ԸՆԴՀԱՐՎՈՒՄ Է ՈՒՍՈՒՑՉՈՒՀՈՒ ՀԵՏ

Առաջին դասից հետո միսս Գրինը, դիմեց դասարանին հետևյալ խոսքերով.

— Երեխաներ, ձեր դասարանում դավաճան կա, որը դավաճանել է պետության և կառավարության շահերին։ Կանգնիր, Թոմմի Բրաուն։ Թոմմին կանգնեց։

— Ասա Թոմմի,— դիմեց վարժուհին նրան,— ինչ էիր մտածում, պատասխանելով իմ տված պատմության վերաբերյալ հարցերին։

— Զարմանալի հարց է.— պատասխանեց Թոմմին,— ես ուզեցել եմ ասել այն, ինչ որ գրել եմ։

— Թոմաս,— ասաց ուսուցչուհին ձայնը բարձրացնելով— քեզ պարկեշտ չեղիր։

Նա ուզում էր հակաճառել, բայց կատաղած ուսուցչուհին բղավեց «բավական է»— և սկսեց կարդալ Թոմմի տված պատասխանները։



— Երեխաներ,— ասաց նա վերջացնելով ընթերցումը,— որը ձեզանից համակրում է հարցերի այս պատասխանները։



— Պիոներներ— բղավեց Թոմմին, պահեցեք լեզուներդ, միք պատասխանի նրա հարցին։ Զայրացած ուսուցչուհին կրկնեց իր հարցը։

Բայց Թոմմիին բոլորը լսեցին և միս Գրինի հարցը անպատասխան մնաց։

### ՈՒՍՈՒՑԻՉՈՒՀԻՆ ԾԵԾՈՒՄ Է ԹՈՄՄԻԻՆ

Կատաղած ուսուցչուհին վերցրեց ճիպոտը և սկսեց ծեծել Թոմմիին։ Նա այնքան խփեց Թոմմիի ձեռքերին և երեսին, մինչև որ նրանք կապտեցին։

Ամբողջ դասարանը հուզվեց։

Աշակերտուհիներից մեկը՝ Մերի Ջոնսը բղավեց,— Տղաներ, կանգնեցրեք նրան։

### ԴԱՍԱՐԱՆԸ ԹՈՄՄԻԻ ՀԵՏ Է

Մերիին լսեցին բոլոր պիոներները և հարձակվեցին ուսուցչուհու վրա։

Ճիպոտը թափահարելով նա պաշտպանողական դիրք ընդունեց և բղավեց— «Երեխաներ, գրավեցեք ձեր տեղերը»։

Ուսուցչուհուն առանց այլևայլության չենթարկվելու սովորությունը, այնքան էր արմատացել երեխաների գիտակցության մեջ, որ նրանք չենթարկվեցին ուսուցչուհու հրամանին։

Բոլորը նստեցին բացի Մերի Ջոնսից։

Անհամբերորեն նայելով ուսուցչուհուն, նա հարցրեց։

— Օրինակա՞ն եք վարվում արդյոք, երբ ծեծում եք երեխաներին։

Այդ ժամանակ դասարան մտավ դպրոցի տեսուչ միստր Սմիտը։

### ՏԵՍՈՒՉԸ ՀԱՎԱՆՈՒԹՅՈՒՆ Է ՏԱԼԻՍ ՈՒՍՈՒՑՉՈՒՀՈՒ ՎԱՐՄՈՒՆՔԻՆ

Լսելով ուսուցչուհու պատմությունը, նա խորհրին արհամարանքի տոնով ասաց.— Միս Գրին դուք շատ արդարացի եք վարվել։ Եթե ես ձեր տեղը լինեի նույնը կանեի։

Այդ ժամանակ Թոմին ասաց միստր Սմիտին։

— Պարոն տեսուչ։ Թույլ տվեք ես էլ երկու խոսք ասեմ։

— Ձեզանից այդքանն էլ է հերիք երիտասարդ. Մերիի հետ իսկույն և եթ անցեք իմ առանձնասենյակը։

### ԴԱՍԱՐԱՆԸ ԳՈՒՄԱՐՈՒՄ Է ԲՈՂՈՔԻ ԺՈՂՈՎ

Երեկոյան դասարանը ժողով գումարեց։ Մերրին և Թոմմին պատմեցին միստր Սմիտի սուտ ու թշնամական ընդունելության մասին։

— Եթե նման երևույթներ երկրորդ անգամ կրկնվեցին, դուրս կարվեք դպրոցից.— ասել էր Սմիտը նրանց։

### ՄԻ ԴՊՐՈՑԱԿԱՆ ԲՋԻՋ ՅԵՎՍ

Աշակերտները քննում էին իրենց գրությունը։ Թոմմին բարձրացավ և հետևյալ ճառն ասաց։ Նա այնքան էլ ճարտասան չէր. այդ իսկույն աչքի էր ընկնում։ Նրա ճառի բովանդակությունը գլխավորապես կայանում էր հետևյալում։

— Ընկերներ, — ասաց նա, — յես կարծում եմ, վոր մենք առայժմս հեռու պիտի պահենք մեզ վորևէ վընասակար ձեռնարկություններից։ Դրա համար առաջարկում եմ կազմակերպել դպրոցական պիոներական բջիջ։

Ով համաձայն է պայքարել ուսուցիչների և տեսուչների բռնության դեմ, թող ցուցակագրվի այդ բջիջում։ Թոմմի խոսքերի պատասխանն էր — բարձրացված ձեռքերի անտառը։

— Մենք, բանվորների յերեխաներս, շարունակում էր Թոմմին, իր ունեցած հաջողությունից վոգեվորված պետք է համախմբվենք և պայքարենք մեր իրավունքների համար։

Թոմմին տուն էր վերադառնում Մերրիի հետ։

— Գիտե՞ս, — ասաց նա, ցույց տալով իր ձեռքերը գործարող կապույտները, — ինձ շատ լավ դփեցին։ Բայց յես դրան արժանի եմ։ Միս Գրինի ծեծը հող պատրաստեց դպրոցական բջիջի կազմակերպման համար։ Դրա համար յես շատ ուրախ եմ։

## ԳԻՔՈՐԸ, ՍԱՔՈՆ, ԿԻՄԱՆ ՅԵՎ ԳԱԶԱՐԸ

Արևը վառ էր, գործը դժար էր,
Փորում էր Գիքոն ուժերը լար·ծ.
Ինչ էլ, վոր լիներ նա վորոշել էր,
Վերջացնել գործը իր ծրագրած։



Կարդացել էր նա «Պիոներ» հանդեսում,
Վոր բանջարանոց պիտի ունենալ,
Յեվ հենց էն օրն էլ բահը ձեռն առած,
Փորում էր, փորում քրտինքում կորած։



Մոտեցան նրան Սաքոն ու Կիման,
Պա՛, պա՛ ամա՛ն մի մտիկ սրան...
Ա՛յ, Գիքոր, թո՛ղ տուր,
Խելքիտ զոռ մի տուր.
Կցանես բանջա՛ր...
Կմնաս անճար։

Գարունը անցավ, ամառը յեկավ,
Գիքորի մարգերում, ինչ ասես չկար.
Բայց ամենից մեծ ու ամենից լավ,
Կար չկար կարմիր մի սիրուն գազար։

Գազա՛ր, ինչ գազար, մեղր ու շաքար,
Թե կուզես շուռ տուր ամբողջ աշխարհը,
Չես գտնի մի հատ եդպիսի գազար.
Բայց Սաքոն վաղուց գիտեր իր բանը։

Մի գեղեցիկ օր, Սաքոն գողեգող,
Գիքորի սիրուն մարգերը մտավ.
Գազար ուտելու փորացավ ուներ
Սրտի ուզածը նա այնտեղ գտավ։



— Ա՛յ, իմ գազար, դու փոքր ճար,
Քեզ ինչ սրտով յես ուտեմ...
Ո՞վ է պահել, ո՞վ է ցանել
Դարդ ու ցավդ հոգացել։

Բայց, դե ինչ արած, փորացավ ունեմ
Սաստիկ դող ու տենդ
Քիչ ներողամիտ յեղիր խնդրում եմ։

— Ա՛յ, դո՛ւ անէրես,
Դեռ պիոներ ես
Ասինք մի՛շտ պատրաստ,
Վոր գո՞ղ էլ դառնաս։

— Վա՜յ, բը...մ ...ա...ա... գլուխս ինչ կիմա,
Քարոզդ պահիր, տեղը չի հիմա.
Լավ կլինի արի դու էլ ինձ օգնիր,
Սուս ու փուս հանենք Գիքոն չիմանա։

Կիման... դե միքիչ, չեմ ու չում արավ,
Բիչ խուռնջիկ, մռնջիկ... չեմ ուզում լանի
Ուտելացավը բռնել էր չելավ...
Ուտել էր ուզում, դե գի..եք ելի...



Դու մի ասի Գիքոն մեր
Էդ բոլորը լսել էր,
Ու թմբի տակ պահ մտած,
Աչքի տակով դիտում էր։

— Քաշի, հա՛, քաշի Կիմա՛ դուրս լեկավ.
Տնքում էր Սաքոն ու նեղվում Կիման,
Մին էլ վար հանկարծ գազարը չելավ...
Մեկը ընկավ դե , իսկ մյուսը դեն։



— Համ կերաք... եդպես է բա՛ս,
Իշտահներիտ քացախ թթու...
Դե՛, առեք ձե՛զ... դուք հմի փաս...
Իմ աշխատածն է, լես եմ ուտում։

Պատկեր՝ Ռ. ԽՍԱՌԸՆՑԱ՛Ն

# ԹՄԲԿԱՀԱՐ—ՄԿՈՅԻ ՄՏՔԵՐԻՑ

*(Հանգստի ժամերին գրված)*

Յեթե ծերունին կարմիր վզկապ է կապել, դա դեռ չի նշանակում, վոր նա ավագ պիոներ է։

—

Համաքուլթին ուշանալը հեշտ է, բայց ինչքան դժվար է ճիշտ ժամին ներկա լինել։

—

Յեթե Զեմբեռլենին պատահեք, պարտադիր չէ և կարիք էլ չկա բարեվելը։

—

Յեթե պիոներներից մեկն ու մեկը քեզ մոտ վզկապով քիթը սրբում է, հեշեցրու, վոր մաքրությունը առողջապահության առաջին պայմանն է։

—

Ինչ ուզում եք ասեք, բայց թմբկահարը լավ ազա յե։

—

Յերբեմն շեֆն էլ է լավ լինում։

—

Կարելի յե ունենալ խաղանակ և առամի փոշի, բայց չմաքրել ատամները։

—

Յեթե հայրդ քեզ հաց գնելու յե ուղարկում, մի կարծիր թե նա շահագործող է։

—

Յեթե տատդ չի ուզում պիոներ լինել, մի պարտադրիր։

—

Պիոներները պետք է առանց թմբուկի յել կանոնավոր քայլեն։

## ԳԱՐՈՒՆ

Դուրսը արև ալվան,
դրսում կանաչ թափիչ,
կապույտ յերկինք պայծառ
ու ճակներ ծափի.

Գյուղերն հեռու, հեռու...
կորած կապույտ միգում,
ու թռչուններ ճախրող
հորիզոնի տակով...

Մեր սրտերը գարուն,
մենք նոր կյանքի թռչուն,
սրտերում մեր ջահեր,
թռչում ենք հեռու...

Պատկեր՝ Վ. Բղեուեի





# „ՊԻՈՆԵՐ“-Ի

## ՀԱՅԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՆԴԱՄ ԵՎ ՅԵՐԵՎԱՆԻ ԿՈՄԻՏԵՅԻ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿ. ՇԱՀԳՅԱԼԴՅԱՆԸ ՊԻՈՆԵՐՆԵՐԻՆ

*1. Անհրաժեշտ է, վոր աճող պիոներ շարժման, նրա աշխատանքների վրա կուսակցությունն ու ժանավորդ կոմսոմոլը սրեն իրենց ուշադրությունը։ Դեռ բավարար չի ղեկավարությունը, դեռ շատ թերություններ ունեն պիոներները։*



*2. Ցանկանում եմ, վոր պիոներները կրթվեն կոմունիստական վոգով. լինեն իսկական ավանդապահը յերրորդ սերնդի, սովորեն սոցիալիզմի կառուցման պրակտիկ աշխատանքներից, ճանաչեն արտադրությունը. կռվեն կրթության ասպարեզում ունեցած իրենց թերությունների դեմ։*

*3. Ցանկանում եմ, վոր աճող պիոներ կազմակերպությունը ունենա իր բավականին թվով ու պատրաստված կոլվարները։ Դեռ կոլվարների լավ կադրեր չունենք։ Այնպիսի կոլվարներ, վորոնք վոչ միայն գիտեն արտաքին շարժումներ սովորեցնել, այլ լավ ծանոթ են մանկավարժության և առողջապահության հետ։*

*4. Ցանկանում եմ, վոր պիոները լինի ամենալավ աշակերտը դպրոցում, կապի պիոներ աշխատանքը դպրոցական աշխատանքների հետ, չհոգնի ու չքայքայի իր առողջությունը։ Թողնի իր պիոներ պարծենկոտությունը։ Պիոները օրինակ պետք է լինի մնացած աշակերտության։*

*5. Ցանկանում եմ, վոր պիոները կռվեն դեռ մեր դպրոցներում մնացած ազգային հակամարտություն սերմանող կործիքների դեմ։ Պիոները պիտի կրթվի ինտերնացիոնալ վոգով։ Նա պետք է լավ իմանա, վոր դաշնակները, մենշևիկները դրանք շովինիստներ, ազգայնամոլներ են, ամենակատաղի մեր թշնամիները։*

*6. Ցանկանում եմ, վոր պիոները պատրաստ լինի, միշտ պատրաստ, պիտանի մարտիկ լինելու կոմունիզմի հաղթանակի համար։*

## ՌԻՖՑԻՆԵՐԻ ԱՌԱՋՆՈՐԴ ԱԲԴ-ԷԼ-ՔԵՐԻՄԸ

*Դժվար թե գտնվի մի պիոներ, վոր իմացած չլինի Մարոկկոյում ապրող Ռիֆֆ ժողովրդի ազատագրական պայքարի մասին, ուղղված ֆրանսիացի ու իսպանացի իմպերիալիստների դեմ։*

*Վերջերս լրագրները հաղորդեցին, վոր Ռիֆֆերը պարտված են և նրանց առաջնորդ Աբդ-էլ-Քերիմը գերի յե ընկած։*



*Այդ պարտությունը օրեցօր սպասվում էր, վորովհետև չէր կարող մի բուռն ժողովուրդ յերկար դիմադրել ֆրանսիական ու իսպանական մեծագույն ուժերին։*

*Բայց Ռիֆֆերը վերջնականապես չեն պարտված։ Նրանք ավելի կազմակերպված դուրս կգան պայքարելու։ Այն ժամանակ նրանց հետ կլինեն Աֆրիկայի բոլոր ճնշված ժողովուրդները։ Այդ պայքարը նրանց հաղթանակ կբերի։*

*Աբդ էլ Քերիմը աքսորված է իր ընտանիքով Աֆրիկայից դեպի հարավ-արևելք գտնվող Մադագասկար կղզին։*

# ՀԵՌԱԽՈՍԻ ՄՈՏ



### Անգլիայի ածխահատ բանվորների համառ պայքարը

Յերրորդ ամիսն է, ինչ ածխահատ բանվորներն Անգլիայում համառ պայքար են մղում 7-ժամյա բանվորական օրվա և աշխատավարձի ավելացման համար։

Ածխահատները վորոշել են մինչև վերջին շունչը պայքարել իրենց պահանջների համար։



Նրանց առաջնորդ ընկեր Կուկը հայտարարել է — ավելի շուտ հանքերում խոտ կբուսնի, քան թե ածխահատները կհամաձայնվեն աշխատավարձի իջեցմանն ու 8 ժամյա բանվորական օրվան։

### Կապ հաստատեցեք արտասահմանի պիոներների հետ

Մոսկվայում, Կենտրոնական Պիոներական Կաբինետին կից կազմված է միջազգային պատանեկական շարժման բաժին։

Այդ բաժնի միջոցով ԽՍՀՄ պիոներները կարող են հեշտությամբ կապ հաստատել արտասահմանի իրենց ընկերների հետ։ Այդտեղ պետք է ուղարկեն մեր պիոներական կոլեկտիվները իրենց նամակները արտասահմանի պիոներական այս կամ այն խմբին ուղարկելու համար։ Յեվ այդ բաժնի միջոցով նույնպես կստանան պատասխանը։

**Հասցեն.**— Москва, Китайский проезд дом № 3 под'езд 12 Центральний Пионерский Кабинет.

Լավ կլինի, վոր կոլեկտիվները նամակները հանձնեն գավ բյուրոյին, նա ռուսերեն կթարգմանի և համապատասխան գրությամբ կուղարկի։

### Պատանեկական կոմունիստական խմբերի միջազգային բյուրոյի պլենումը

Սեպտեմբեր ամսին գումարվելու յե պատանեկական կոմունիստական խմբերի միջազգային բյուրոյի պլենումը (լայնացրած ժողովը)։ Այդ պլենումին մասնակցելու յեն զանազան յերկրների պիոներշարժման ղեկավարները։ Պլենումը քննելու յե թե ինչ նվաճումներ է ունեցել համաշխարհային պիոներ շարժումը և ինչ խնդիրներ են կանգնած նրա առաջ ներկայումս։

### 1500 հոգի գերմանական կոմսոմոլին

Գերմանական պատանի սպարտակների կազմակերպությունը մեծ հանդիսավորությամբ 1500 պիոներ հանձնել է ԳԿՅԵ Միությանը։

### Կապիտալի փոքրիկ ստրուկները

Շատ վատ է Ավստրիայի բանվոր յերեխաների դրությունը։ Ծնողների չնչին աշխատավարձն ու կարիքը ստիպում է նրանց յերեխաներին ծախել կապիտալիստներին — գործարաններում աշխատելու համար։ Օրինակ՝ հասակավոր բանվորները Ֆորարբերկի տեկստիլ գործարանում աշխատում են օրական 14 ժամ։ Իսկ յերեխաները 10-ից 12 ժամ։

### Պասայիկի պիոներները ոգնում են գործադուլավորներին

Պասայիկը ամերիկական քաղաք է։ Այնտեղ կենտրոնացած է Ամերիկայի տեկստիլ արդյունաբերությունը։ Հազարավոր բանվորներ գործադուլ են հայտարարել։

Նրանք պահանջում են կապիտալիստներից աշխատավարձի ավելացում և գործարաններում տիրող ծանր պայմանների վերացում։

Գործադուլին մասնակցող բանվորներից տասը հազարը պատանի բանվորներ են։ Նրանց ղեկավարում են պիոներները։



Պիոներները կազմակերպել են բանվոր յերեխաների ցույցեր։ Ցույցերի ղեկավարն է յեղել պիոներ Ջորջ Ռոսսը։ Դրա համար վոստիկանությունը նրան բանտարկել և մի քանի օրով և ազատ արձակել։



# ԻՆՉՊԵՍ ԿԱԶՄԵԼ ՀԵՐԲԱՐԻՈՒՄ

Բույսերի հետ մոտիկից ծանոթանալու համար, հարկավոր է նրանց ուսումնասիրել բնական կազմությամբ։ Դրա համար անհրաժեշտ է բույսը տեղափոխել դաշտից այնպես, վոր նա պահպանի իր բոլոր մասերն անփոփոխ։

Ինչ է հարկավոր հերբարիում կազմելու համար։ Յեթե կոլեկտիվը գնում է եքսկուրսիա և նպատակ է դնում բույսեր հավաքել և հերբարիում կազմել, պետք է ամեն մի պիոներ նախորոք պատրաստի հետևյալ անհրաժեշտ գործիքները. 1. կարճ կոթով թիակ կամ դանակ. բույսերը հողից հանելու համար, 2. բուսարկղ՝ վորը թիթեղյա գլանաձև աման է։ Նրա մեջ լցնում են հողից նոր հանած բույսերը. 3. փայտյա յերկու շրջանակ 50սմ. յերկարությամբ և 30սմ. լայնությամբ, ծածկված մետաղե լարից կազմված ցանցով—բույսերը չորացնելու համար. 4. ծծող թուղթ, կամ հին լրագրներ, շրջանակների մեծությամբ ծալած, վորոնց արանքում դնում են բույսը չորանալու համար, 5. տետր, վորտեղ գրվում է բոլոր մանրամասնությունները հավաքած բույսերի մասին։

**Ինչպե՞ս հավաքել բույսեր.**

Հերբարիումի համար, պետք է ընտրել ամենից առողջ, իր բոլոր մասերով լրիվ բույսերի տեսակներ, վորոնք պետք է ունենան արմատ, ցողուն, տերև, ծաղիկ, և յեթե հնարավոր է պտուղ։ Բույսը հանելիս պետք է զգույշ լինել. պիտի աշխատել, վոր արմատները քիչ վնասվեն։ Արմատներից հողը սրածայր փայտով կամ ջրով մաքրելուց հետո, բույսը տեղավորում են բուսարկղի մեջ։



Բուսարկղ

Բույսը թարմ մնալու համար, անհրաժեշտ է, վոր բուսարկղը լինի մութ և մեջը խոնավ (խոնավ պահելու համար սովորաբար լցնում են արկղի հատակին մամուռ, կամ կանաչ տերևներ)։

Ամեն մի հավաքած բույսին պետք է կպցնել թուղթ նշանակելով համարը։ Իսկ տետրում նույն համարի դիմաց հարկավոր է գրել, վորտեղ է հավաքած բույսը (մոտիկ գյուղի, քաղաքի, ձորի կամ սարի անունը), յերբ է հանած հողից (տարին, ամիսը, թիվը, որվա ժամը), հաճախ է պատահում և ինչ քանակությամբ։

**Չորացնելու աշխատանքները**

Եքսկուրսիայից տուն վերադառնալով, անմիջապես հարկավոր է անցնել չորացման աշխատանքներին։ Դրա համար պիտի հավաքած բույսերը հանել բուսարկղից, արմատները հողից բոլորովին մաքրել։ Այնուհետև մաքրած բույսը դնել ծծանի կամ լրագրի թղթի վրա և զգուշությամբ տերևները, ծաղիկները այնպես բաց անել ու դասավորել, վոր բույսը ստանա վորքան հնարավոր է բնական տեսք։ Յեթե բույսի ցողունը յերկար է և չի տեղավորվում թերթի յերեսին, կարելի է ծռել կամ բաժանել մի քանի մասի։ Բույսը չորացնելու համար ծածկում են նրան մի քանի թերթ ծծող թղթով և դնում շրջանակների արանքում։ Այդպես բոլոր հավաքած բույսերն առանձին, առանձին դասավորելուց և տեղավորելուց հետո, շրջանակները գոտիով իրար պինդ կապում և դնում են մի ծանր իրի տակ Այդ դրությամբ բույսերը, հարկավոր է պահել յերկու որ։

Յերկու որից հետո քանդում են շրջանակները և բույսերը տեղափոխում չոր թղթերի արանքը։ Այդ աշխատանքն անպայման պետք է կատարել վորովհետև բույսը յերկու որ մնալով թղթերի արանքում բավական ջուր է գոլորշիացնում և խոնավեցնում է թղթերը։ Այդ տեղափոխությունները անհրաժեշտ է կատարել մի քանի որ, մինչև վոր բույսերը լավ չորանան։

**Հերբարիում**

Հերբարիում կազմելու համար, չորացված բույսերը զգուշությամբ նեղ ու բարակ թղթերով, առանձին-առանձին ամրացնում են մաքուր թղթի վրա. Թղթի ներքևի մասում՝ աջ անկյունում (ինչպես ցույց է տալիս նկարը) գրում են 1. բույսի համարը, 2. վոր ընտանիքին է պատկանում, 3. ա-

նունը, 4. տեղը, 5. ժամանակը, 6. ով է հավաքել։

Առանց այդ նշանակումների հերբարիումը կկորցնի իր նշանակությունը։ Անշուշտ պիոներներից շատ քչերը գիտեն բույսի ընտանիքը, անունը, դրա համար կարելի է բոլոր հարցերը գրել. իսկ ընտանիքը, անունը իմանալ ուսուցչից կամ բնագետից և նոր մըտցնել։



Բույսը շրջանակների մեջ



Բույսը ամրացված է թղթին

### Բույսերի չորացումը ավազի մեջ

Բույսեր կարելի է չորացնել նաև ավազի մեջ։ Անհրաժեշտ է գետից վերցնել շատ մանր ավազ, ջրով լվանալ և արևի տակ կամ վառարանի մեջ լավ չորացնել։ Այնուհետև բույսի մեծության համեմատ, վերցնել արկղ, հատակին լցնել ավազ և բույսը զգուշությամբ անկել։ Հետո ավազը ձեռքով դանդաղ և շատ զգույշ լցնում են բույսի վրա այնպես, որ նրա տերևները, ծաղիկները գտնվեն բնական դրությամբ և բոլոր մասերը ծածկված լինեն ավազով։ Արկղը ավազով լցնելուց հետո, դնում են մի չոր տեղ և թողնում մինչև վեց օր։ Այդ ժամանակամիջոցում բույսը ամբողջովին չորանում է։


Բույսը ավազի մեջ

Ավազի միջից չորացած բույսը հանելու համար, արկղի հատակում մի անցք են բաց անում և թույլ տալիս, որ ավազը դանդաղությամբ վայր թափվի։ Այնուհետև չորացած բույսը ամրացնում են սովորական կարտոնի վրա, կամ ափսեի մեջ և պահում ապահով տեղում։

### Միջատների կոլեկցիաներ կազմելու մասին

Գարնանը և ամառը ծաղիկների հետ միասին երևում են նաև միջատները։ Պետք է նրանց էլ հավաքել և կոլեկցիաներ կազմել։

Միջատներ հավաքելու համար հարկավոր է նախորոք պատրաստել ձեռնատուկան։ Ձեռնատուկանը պատրաստելու համար վերցնում են մետր ու կես յերկարությամբ կլոր փայտ, ծայրին ամրացնում շրջանաձև պինդ լար։

Լարին կարում են ձագարաձև բարակ կտոր։


Ձեռնատուկան

Ձեռնատուկանի միջոցով բռնած միջատները զգուշությամբ հանում գցում են ապակյա փակ անոթի մեջ, որի հատակին դրված է բամբակ, յեթերով թրջված։ Միջատն անմիջապես սատկում է։ Կարճ ժամանակից հետո, պետք է անոթից հանել միջատը, գցել մեկ ուրիշ արկղի մեջ և բերանը պինդ փակել։

### Թիթեռների չորացումը

Եքսկուրսիայից վերադառնալով անմիջապես պետք է բռնած թիթեռներին ամրացնել հարթիչի վրա,


Հարթիչ

որպեսզի թևերն ուղիղ և բնական դիրքով չորանան։ Հարթիչ պատրաստելու համար վերցնում են 50 սմ. յերկարությամբ և 30 սմ. լայնությամբ յերկու բարակ տախտակ։ Տախտակներից մեկն ամրացնում են, իսկ մյուսը՝ թողնում շարժուն։ Տախտակների արանքում հարկավոր է թողնել նեղ ու յերկար ակոս և տակը ամրացնել կարտոն։ Թիթեռը պետք է գնդասեղով ամրացնել կարտոնին այնպես, որ թիթեռի մարմինն ուղիղ և նեղ ակոսի մեջ։ Թևերը բարակ թղթով պինդ ամրացնել տախտակներին և այդպես թողնել մի քանի օր։


Չորացրած միջատը արկղում

Թիթեռները չորացնելուց հետո, պետք է տեղափոխել առանձին արկղի մեջ և գնդասեղով ամրացնել նրա հատակին։ Որպեսզի հնարավոր լինի դիտել, արկղի յերեսը ծածկում են ապակով։

Կոլեկցիաները չպետք է արևի տակ դնել. ծաղիկներն ինչպես և թիթեռներն իրենց գույնը կկորցնեն։

Ս. Մասոյան




# ԱՐԵՎԸ, ՋՈՒՐԸ ՅԵՎ ՈԴԸ

## ՊԻՈՆԵՐԻ ԱՄԵՆԱԼԱՎ ԲԱՐԵԿԱՄՆԵՐՆ ԵՆ

Կոմյերիտի հաջորդը պետք է լինի ամրակազմ և առողջ: Պիոների համար ամենից առաջ առողջությունն է հարկավոր:

Մենք շատ լավ և ընդմիշտ պիտի հասկանանք, վոր ամառը մեր առողջությունը կարող ենք ամրապնդել ջրի, ոդի և արևի միջոցով: Սրանք են մեր բարեկամները, սրանք են մեր ամենալավ և իսկական դեղերը:

### ՈԴԸ

Ոդը անհրաժեշտ է բոլորին: Կրակն առանց ոդի չի վառվի, մարդն առանց ոդի չի ապրի: Մարդը մի մեքենա յե: Մեր ուտելիքը վառելիք է, վորը լուծվում է մեր ստամոքսում և հետո արյուն դառնում, տարածվում է ամբողջ մարմնի մեջ:

Մեր կրծքի վանդակում կան թոքեր, վորոնք փուքսի նման են: Թոքերը միշտ պետք է լցված լինեն մաքուր ոդով, վորովհետև արյունը անցնելով նրանց միջով կըլանում է ոդի միջի ամբողջ թթվածինը: Վորքան մարդ կանոնավոր շնչի, վորքան նրա թոքերում մաքուր ոդը շատ լինի, այնքան նրա սիրտը կանոնավոր կաշխատի, այնքան առողջ և ուժեղ կլինի որգանիզմը:

Յեթե շոգ շարժ մեքենայի ոդանցքը փակենք, գնացքը հետզհետե կդադարեցնի իր ընթացքը և վերջի վերջո կանգ կառնի: Նույնն է մարդը, վորքան նրա թոքերը վատառողջ են, այնքան քիչ է ներանում մաքուր ոդը: Թոքերի հիվանդությունը անվանում են թոքախտ, կամ թոքերի տուբերկուլյոզ:

Թոքախտավորը հետզհետե հյուծվում է, թառամում:

Այս հիվանդությունը տարեկան միայն Ռուսաստանում հազարավոր մարդկանց է գերեզման տանում: Առաջ բժիշկները այդ հիվանդությունը անբուժելի եյին համարում, իսկ հիմա հիվանդները գնում են ծովափերը, մայրի անտառներ, մաքուր ոդի մեջ և արևի տակ ու հազարավոր թոքախտավորներ բոլորովին առողջացած վերադառնում են աշխատելու: Ձեզնից յուրաքանչյուրը անկասկած զգացել է, թե վորքան թեթև է շնչում ինքը քաղաքից դուրս, անտառում, կամ անձրևից հետո նույնիսկ քաղաքի մեջ: Ինչու, վորովհետև անձրևից հետո քիչ, կամ բոլորովին փոշի չկա ոդի մեջ, հետևապես քիչ վնասակար նյութեր են ընկնում թոքերը և արյան մեջ:

Ահա և, Պիոներներ, շատ յեղեք մաքուր ոդի մեջ: Յեղեք պարտեզներում, անտառներում. այնտեղ ավելի շատ է թթվածինը:

—

### ԱՐԵՎ

Արևը կյանքի աղբյուրն է: Առանց արևի վոչինչ չի կարող գոյություն ունենալ: Բոլոր կենդանիները սիրում են արևը:

Ճանճը, կատուն, շունը—սրանք բոլորը ժամերով տաքանում են արևի տակ: Բուսականությունը, նույնպես ձգտում է դեպի արևը: Ասում են, վոր յեղևնու հարավային կողմի ճյուղերը ավելի շատ են լինում: Ինչու: Վորովհետև հարավային կողմում, արևը ավելի շատ է, իսկ բույսերը սիրում են արև: Արևը բերում է մեզ հսկայական ոգուտներ: Հիշում եք վերևում ասացինք արևը ամենալավ դեղն է:

Ինչ է անում արևը: Արևի ճառագայթները թափանցում մեր մարմնի մեջ և կոտորում նրա միջի մեկրոբներին, այսինքն այն մանր արարածներին, վորոնք բերում մեզ ամեն տեսակի հիվանդություններ:

Ահա թե ինչու, այդքան անհրաժեշտ է արևը և ինչու պետք է արևի վաննաներ ընդունենք: Բայց ամեն մի դեղ տրվում է վորոշ ձևով և վորոշ քանակությամբ: Բժիշկները դեղ տալիս ասում են, թե վորքան և յերբ պիտի ընդունել: Մի դեղը պետք է ընդունել ճաշից առաջ, մեկ ուրիշը հետո: Մի դեղից տալիս են 20 կաթիլ, մյուսից 30 կաթիլ: Արևից էլ

պետք է օգտվել գլխանոց։ Ահա արևով բժշկվելու կանոնները

ա. Ընդունես արևի վաննաներ բաց գլխով և կուշտ փորով։ Ամենալավ ժամանակը առավոտն է, սպիտակ թաշկինակը գլխին։

բ. Վաննաները առաջին օր ընդունես 15 րոպե, և ապա ամեն օր 5 րոպե կավելացնես։

գ. Մի որ երկար պառկել, կամ լինել արևի տակ ու կաշին այրել վոչ մի օգուտ չունի։

դ. Վաննաներ ընդունելիս վոչինչ չխմես։

ե. Վաննաներից հետո, գոլ ջուր ածիր վրադ և կամ թրջած շորով սրբիր մարմինդ, հետո չորացրու ու հագնվիր։ Ամենից լավը գոլ ջրով լողանալն է։

## ՋՈՒՐ

Մարդու ամենալավ բարեկամներից մեկն էլ ջուրն է։ Մաքրությունը պահպանելով և խնամքով լողանալով մենք սրբում ենք այն բոլոր կեղտը, վորը հավաքվել է մեր կաշվի վրա։ Վորքան մաքուր պահես մարմինդ, այնքան քիչ կհիվանդանաս. բայց լողանալն էլ իր չափն ու սահմանն ունի։

Շատերը սիրում են երկար ժամանակ ջրում մնալ։ Ջրում երկար մնալը օգուտ չի բերում, այլ վնաս։

Առաջին անգամ ջրում 2-3 րոպեյից ավել չպիտի մնալ։ Իսկ հետագայում լողանալիս կամաց-կամաց կավելացնես ջրում մնալու ժամանակը, հասցնելով այն տասը րոպեյի։

Մենք տեսանք, թե ինչքան օգուտներ կարող ենք ստանալ արևից, օդից ու ջրից։

Այդ երեք ամենալավ դեղերով առողջացնենք մեր մարմինը։

Կոմյերիտի հաջորդը, պետք է լինի առողջ և ուժեղ։



Մ ա ր զ ա ն ք

Ն. ԶԱՐՅԱՆ

## ՄԱՐԶԱՆՔ

(Երգել „Стенька Разин" երգի յեղանակով)

Առավոտ վաղ շամանդաղին
զուլալ քնից զարթնելով,
շտապում ենք մարզատեղին,
մեր շարքերը գտնելու։

Այնպես կանաչ, այնպես շաղոտ
հարազատ է Կոմ-Այգին.
յերբ վոր շարվում ենք ծառուղում,
անշարժ իրար քամակի։

Այնպես ուրախ է, յերբ հանկարծ
գիլ հրահանգն է հնչում.
ու կրծքերը պիոներական
բարձրանում են մի շնչով։

Յերբ թնդում է թմբուկն անուլ,
թմբուկը թունդ ու խրոխտ,
ու մենք քայլում ենք յեռանդուն
պիոներական քայլերով։

Յերբ մեր անշեղ քայլերի տակ
գետին ուրախ դողդողում.
արձագանք են տալիս հստակ
հրապարակ ու փողոց։

Ինչ ուրախ է մարզանք անել
առավոտյան զով ժամին,
յերբ շնչում ես թարմ օդի հետ
առողջ մարմին-առողջ միտք։

Յերբ արծիվն է սանրը հուրհուր
պարզում սարի կատարից—
ու սանրում է հանդիսավոր
հյուսքը կանաչ ծառերի։

Եʼյ, կոլեկտիվ պիոներական
տուն, հայրենիք սիրելի,
քեզ ենք տալիս մենք մեր մատաղ
սերն ու կյանքը սիրով լի։

Քեզ ենք գալիս ջինջ անաղարտ
ձգտումներով մանկական,
կազմակերպիր ոդակ-ոդակ,
կապիր մեզ նոր մարդկության։



Հոկտեմբերիկները խաղում են

# ՄԵՐ ԿՅԱՆՔԸ



Ողակային հավաքույթ

## Տրակտորով վարեցինք

Համամլի գյուղի աշակերտները և պիոներները, դպրոցի ամբողջ բակը վարեցին տրակտորով։ Վարելուց հետո պատրաստեցին մարգեր և ցանեցին զանազան տեսակի բանջարեղեն։ Այժմ կամացկամաց նրանք բուսնում են։

Մենք շատ ուրախ ենք մեր կատարած աշխատանքով։

Պատկոր՝ Մ. Բունարյան

## Հողամաս ձեռք բերեցինք յեվ ցանեցինք

Խաչիկ գյուղի պիոներ կոլեկտիվը շատ եր մտածում հողամաս ունենալու մասին։ Դրա համար նա դիմեց գյուղխորհրդին, խնդրելով, հողամաս տրամադրեն։ Գյուղխորհուրդը չմերժեց և կոլեկտիվն ունեցավ իր հողամասը։ Հետո սերմի համար ել դիմեցին գյուղի փոկին։ Նա բաց թողեց իր միջոցներից 2 փութ ցորեն։

Պիոներները ուրախ եյին, բայց վարելու համար վոչ լեզ ունեյին, վոչ գութան, կամ արոր։ Ի՞նչ անել։ Խնդրեցին ծնողներին և ուժեն մեկը իր ունեցածով յեկավ օգնության.

Կոոպերատիվ բջիջն ել իր հերթին օգնեց։ Կոմյերիտականներից մի քանիսը պիոներների հետ մասնակցեցին վար ու ցանքսին։

Հիմա մեր արտը հասել ե և գյուղի ամենալավ արտն ե։

Այսպիսով պիոներները հողի հետ են կապվում, պատրաստվում են լավ գյուղացի լինել։

Թող Խաչիկ գյուղի պիոներների յեռանդը վարակի բոլոր պիոներներին։

Պատկոր՝ Գեղամ

## Յեղարդուտի պիոներներն ել հողամաս ունեն

Յեղարդուտ գյուղի պիոներները ուզում եյին փորձադաշտ ունենալ։ Ի՞նչ անել, ի՞նչ չանել։ Մտածեցինք գյուղխորհրդին դիմել։ Նա մեծ ուրախությամբ հատկացրեց մեզ մի փոքրիկ հողամաս։ Այդ հողամասը բաժանեցինք յերկու հավասար մասի։ Մեկը «Նոյեմբեր», մյուս ել «Թրուդովիկի» անվան կոլեկտիվի համար։ Հետո կանչեցինք գյուղատնտեսին։ Նրա ցուցմունքներով մշակեցինք հողը և ցանեցինք ճակնդեղ և գազար։

Այսպիսով գործնական կերպով մենք սովորում ենք, թե ինչպես պիտի հողը մշակել, ցանել և այլն։ Այս մեզ համար խոշոր նշանակություն ունի։ Չե՞ վոր գյուղի պիոներները կուլտուրական, հողին լավ ծանոթ գյուղացիներ պետք ե լինեն։

Պատկոր՝ Քարհանյան





Մանկատան մանուկները տեղաշորերը հավաքում են

# ՄԵՌԱՎ ԸՆԿԵՐ ՁԵՐԺԻՆՍԿԻՆ

«Պիոներ»-ն արդեն տպագրվում եր, յերբ հեռագիրը գուժեց ԽՍՀՄ Ժողովրդական Տնտեսության Խորհրդի և Պետական Քաղաքական Վարչության (Չեկա) նախագահ՝ ընկ. Ձերժինսկու մահը։

Լենինյան հին գվարդիայից մեկն էլ պակասեց։

Չկա խորհրդային շինարարության մեծ ղեկավարներից մեկը, չկա ընկեր Ձերժինսկին։

Ծանր է կորուստը...

Լարենք մեր ուժերը, ավելի կուռ համախմբվենք Կոմկուսի և Կոմյերիտմիության շուրջը։

Պիոներներ, խոնարհենք մի պահ մեր մարտական դրոշները ընկեր Ձերժինսկու թարմ աճյունի առաջ և ավելի բարձր պարզելով նրանց՝ շարունակենք մեր աշխատանքն ու պայքարը։

Կեցցե Լենինի գործը և նրա հաղթանակը, վորի համար աշխատեց ու մեռավ ընկեր Ձերժինսկին։

Կեցցե Կոմունիզմը։

## Դեպի Բաքու

Յերևանի 7-ամյա № 7 դպրոցի ավարտական խումբը կազմակերպեց մի եքսկուրսիա դեպի Բաքու, նավթարդյունաբերության հետ ծանոթանալու համար։

Նախ և առաջ մենք յեղանք Բալախանիյում և Բիբի-Եյբաթում։ Այնտեղ ծանոթացանք, թե ինչպես է ստացվում հորերից նավթը։ Հետո մենք յեղանք Սպիտակ քաղաքում, ուր տեսանք, թե ինչպես են նավթից ստանում մեր արդյունաբերությանը անհրաժեշտ յուղերը։

Բացի դրանից դիտեցինք նաև Բաքվի մանվածքային գործարանը, ծանոթացանք նրա աշխատանքների հետ։

Այս բոլորից հետո, մենք ուսումնասիրեցինք տեղի բանվորների կյանքը։ Ուսումնասիրեցինք նրանց բնակարանային, սանիտարական, և առողջապահական պայմանները և այլն։

Նազուս



Մանկատան սաները ամանները լվանում են

(Սկիզբը 2-րդ յերեսում)

**ԿԱՆՈՆՆԵՐ**—1. Գերի չի համարվում նա, վորին հակառակորդները քաշում են իրենց բերդը։

2. Գերին ազատված է համարվում, յեթե իր խմբի ազատ—այսինքն դեռ բերդը չընկած, ընկերներից մեկը, ձեռքով դիպչում է նրան։

3. Ազատողը—մինչև իր դաշտը հասնելը, համարվում է «խաղից դուրս»—այսինքն վոչ մի մասնակցություն չի ունենում խաղին։

4. Խաղացողներն իրավունք ունեն մտնել ուրիշի դաշտը, վորպեսզի ազատեն գերուն, կամ ոգնեն իրենց դեպի տարվող ընկերոջն ազատելու։ Սակայն նրանք թշնամուն, իրենց դաշտից քարշ տալու համար, իրենք պետք է յերկու վոտքով կանգնած լինեն իրենց դաշտում։

5. Յեթե գերի չի ընկնում խմբի ղեկավարը, այն ժամանակ խմբերը փոխանակում են իրենց գերիները։ Հակառակորդ խմբի ղեկավարին փոխանակելիս, փոխանակողները հետ են ստանում իրենց բոլոր գերի ընկերներին։

6. Խաղը վերջացած է համարվում, յերբ վորևէ խմբի բոլոր անդամները գերի յեն ընկնում։

ԳԻՆՆ Ե 20 ԿՈՊ.

# ՇԱՐԺԻՐ ՈՒՂԵՂԴ!

ՌԵԲՈՒՍ № 8.



ՌԵԲՈՒՍ № 9.







ՌԵԲՈՒՍ № 10.

ԽՆԴԻՐ № 2.

*Խնդիրների յեվ ռեբուսների պատասխանները մյուս համարում: Լուծողների ազգանունները կտպագրենք:*

*Այս կետերն ուղիղ գծերով այնպես միացնել իրար, վոր ստացվի Կոմինտերնի նախագահ ընկ. Զինովիեվի նկարը:*

Խմբագիր՝ Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
Պատասխանատու քարտուղար՝ Հ. ՄԻՐԶԱՅԱՆ

Ցերեկները կապեց գրաշարապես՝ Ա. ԼԱՇՓԱՐՅԱՆ
Տպագրությունը ղեկավար. Կ. ՎԱՃՐԻՋԱՆՑԻ

Շապիկը յեվ նկարները՝ ՀՌՈՅԻ

*Գրաուպլոր № 720 (ր.)* *Պետհրատի չորրորդ տպարան Յերեվանում. պ. 865* *Տիրաժ 3000*